

# ՊԻՈՆԵՐ 4. 1979



1979 ԹՎԱԿԱՆԸ

ԵՐԵԽԱՆԵՐԻ ՄԻՋԱԶԳԱՅԻՆ ՏԱՐԻՆ Է






Ն. ԺՈՒԿՈՎ. «Իսկրա»

# ԻԼՅԻՉԻ ԼՈՒՅՍԸ

*ՄԻՔԱՅԵԼ ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ*

Առկայծող մի լույս
Նետում է շողը պա՛տուհանից դուրս,
Ու խավարում այդ
Ինչպես ճառագայթ,
Որ թեկուզ ծեգին թույլ է և աղոտ,
Բայց ավետում է, որ միևնույն է,
Շուտով կբացվի պայծառ առավոտ:
Վառվում է լույսը,
Եվ Իլյիչն ահա, որ մտահույզ է,
Սեղանին հակված կարդում է, գրում,
Մերթ բարձրանում է նա իր աթոռից,
Բաց պատուհանից նայում է հեռուն՝
Այնտեղ անթափանց խավար է հիմա,
Ռուսաստանը քնած է խորունկ,
Քնած է, սակայն, պիտի արթնանա:
Իլյիչը հոգնած ետ-առաջ քայլում,
Վերադառնում է ու գրիչն առնում:
Գրում է նորից, և ամեն տողից
Կայծեր են հառնում
Եվ այն ճրագի լույսի հետքերով
Սլանում հեռուն
Եվ ամենուրեք մութը վանելով՝
Լույսեր են վառում:
Իլյիչի լու՜յսը...
Բայց ահա դուռը բացվում է հանկարծ
Եվ ներս են խուժում ոստիկանները.
— Արթուն եք մնում, դա լավ չէ արդեն,
Վտանգում եք ձեր առողջությունը...—
Խայթում է սպան, կանգնում դեմառդեմ,
Ատում է սաստիկ, թեև ժպտում է.
— Վաղն առավոտյան, բայց շուտով լույս է,
Ուրեմն՝ այսօր,
Մեկնում եք Կազան:
Այդ ասել է թե՝ ձեզ ազատ աքսոր...
— Ազատ և աքսո՞ր,— Իլյիչը հեգնեց:
— Առայժմ այդքանն, իսկ հետո, տեսնենք...
Թե շարունակեք,
Հիշե՜ք ներբողը ձեր խռովարար,
Ձեզ համար նույնպես կգտնվի հարմար
Կախնելու պարան:

Դանդաղ շարժվում է
Աքսորյալների ծանր մի գնացք,
Երբ հասան, նորից մութ էր անթափանց..
Այստեղ Իլյիչի նոր կացարանի
Նեղ պատուհանից
Նոր լույս շողշողաց...
Ու համատարած կայծեր ճախրեցին,
Որտեղ ընկնում էր կայծն ազատության,
Բոց էր բռնկում,
Աշխարհն ընդգրկում,
Շողարձակում էր՝ արևի նման,
Եվ նրա հանդեպ բռնությունն՝ անզոր.
Սարսափելի չէր բանտ ու կախաղան
Եվ ո՛չ էլ աքսոր:



Նկ. ՍԱՐԻ ԿԱԼՆՆՑԻ

ԳԵՎՈՐԳ ԽԱՉԱՏՈՒՐ

# ՍԵՐՄՆԱՑԱՆԸ

Նկ. ՀԱԿՈԲ ՀԱԿՈԲՅԱՆԻ

Թեկուզ ձնհալի քամիներն իրենց
Սուր արմունկներով
Անվերջ ետ էին հրում ցլապինդ
Մարմինը նրա,
Բայց հաստակորեն նա իր քայլերը
Առաջ էր տանում՝
Ինչպես առաջին զավակը Նոյի...

Քայլում էր այդպես
Հաղթ ու հաղթանդամ,
Քայլում էր՝ ինչպես Նոյն ալեմորուս:
Եվ անցնելով նա ակոսից ակոս,
Ցանում էր բուռ-բուռ
Սերմն իր զոգնոցի՝
Դեմքի քրտնաթոր կնճիռների մեջ
Ծողովելով լույսն արևածագի...

Օրվա հետ նաև արևն էր թեքվում,
Բայց նա դեռ անդուլ
Առաջ էր գնում
Խոշոր քայլերով...
Եվ բնության մեծ տիրակալի պես
Իր զորեղ աջով
Չափ էր տալիս նա
Վերստեղծումի երգեր արարող
Հողի գույներին...

Անա այսպիսի տանջանքով էին
Հողից հաց քամում
Նախնիները մեր:
Եվ այսպիսի մեծ ակնածանքով ու
Երկյուղով էին
Ամեն մի հատիկ պահ տալիս հողին...
Եվ հատիկներով լցված ամեն հասկ
Ո՜, ի՜նչ խնամքով հավաքում հողից:
Դրա համար էլ մեր այնքան բարի
Նախամայրերը՝ հեզ ու հացապաշտ,
Խղճի և հոգու ամենավերին
Հարգանքով էին
Թխում հացն իրենց հանապազօրյա:
Դրա համար էլ
Աչքի լույսի պես
Նրանց համար միշտ և ամենուրեք
Սուրբ էր համարվում
Նշխարը հացի...
Եվ դրանից էր գուցե, որ նրանք
Մի բանի հանդեպ իրենց մեծագույն
Հարգանքի չափն ու
Անմեղությունը
Ցույց տալու համար,
Յուրահատուկ մի բարեպաշտությամբ
Երդվում էին նույն
Նշխարով հացի...



# Ոչ ժամանակակից տատիկը

ԼԵՎ ՆՈՎՈԳՐՈՒԴՍԿԻ

Մի անգամ Նատա Ժուչկովան դպրոց եկավ մռայլ ու ընկճված: Նատան դասարանի ավագն է, շատ կարևոր դեմք, որից մենք ակամա օրինակ ենք վերցնում. այդ պատճառով էլ նրա տրամադրությունը, ըստ Միշկա Սավոնովի, կարող էր հեշտությամբ հաղորդվել մեզ, մեր միջոցով հաղորդվել մեր ծնողներին, հետո մեր հեռու-մոտիկ բարեկամներին և, վերջապես, ընդգրկել ողջ Մոսկվան: Դա լավագույն դեպքում: Իսկ վատթարագույն դեպքում կարող էր տարածվել նաև ուրիշ քաղաքներում:

Միշկան ասաց, որ ինքը կանխատեսում է հենց այդպիսի՝ շղթայական ռեակցիա և, որպեսզի այդ բանը կանխվի, Նատային հարցրեց, թե ինչ է պատահել:

Պարզվեց, որ Նատայի հայրիկն ու մայրիկը գնացել են Սոչի՝ սանատորիայում հանգստանալու և Նատային խնամելու համար գյուղից կանչել են տատին: Սա բարեսիրտ, ուրախ տատ էր, բայց սաստիկ ոչ ժամանակակից տատ: Այս բանը Նատային շատ էր վշտացնում և պատճառ դառնում ընկճված տրամադրության:

— Պատկերացնու՞մ եք,— զանգատվում էր Նատան,— տատս չի իմանում, թե ինչ բան է կոկտեյլը: Կա՞թի կոկտեյլը: Նման բառ նա չի լսել:

— Ի՞նչ ես ասում,— զարմանում էր Վովկա Տրուշինը:— Հապա գյուղի աշակերտներն առանց դրա ո՞նց են ապրում:

— Իսկ ֆլոմաստերին գիտե՞ք ինչ է ասում: Մատիտ:

— Չի կարող պատահել,— չէր հավատում Տոլկա Բուլկինան:— Չէ՞ որ ֆլոմաստերը հենց ֆլոմաստեր է որ կա, ոչ թե մի ուրիշ բան:

— Ըստ երևույթին, դեռ կա՞ն խուլ անկյուններ,— հոգոց հանեց մեր գերազանցիկ Կոստիկ Սոբոլևը,— ուր նույնիսկ կոկտեյլը մուտք չի գործել:

— Այս բանն այսպես թողնել չի կարելի,— ասաց

Միշկա Սապոնովը քիչ խորհելուց հետո:— Առաջարկում եմ օպերատիվ խումբ կազմել տատին ժամանակակից սակարդակի հասցնելու համար: Այլ կարծիքներ կա՞ն:

Այլ կարծիքներ չկային:

Օպերատիվ խմբի անդամներն էին՝ Միշկա Սապոնովը, Կոստիկ Սոբոլևը, ես, Վոլկա Տրուշինը, այսքանը՝ տղաներից, աղջիկներից՝ Տոմկա Բուլկինան և Նատա Ժուչկովան:

Մենք կարգին չգիտեինք, թե Նատայի տատիկը ժամանակակից աշխարհի համկացություններից որին է ծանոթ և որին՝ ոչ: Դրա համար էլ վճռեցինք սկսել ամենաընդհանուր հարցերից, օրինակի համար, նրանից, թե ինչ կառուցվածք ունի Տիեզերքը: Դրանից հետո օպերատիվ խումբը մտածում էր աստիճանաբար անցնել ավելի մանավոր երևույթների ու իրերի և նույնիսկ այնպիսի մանրուքների, ինչպիսին կոկտեյլն ու ֆլոմաստերն են:

Առաջիկա կիրակի օրը մենք գնացինք Նատա Ժուչկովայենց տուն: Միշկան մի անգամ ևս նախազգուշացրեց, որ տատի աչքին մենք պետք է երևանք իբրև բարեկիրթ մարդիկ, պետք է դուր գանք նրան և մեր օրինակելի

ամեն մեկը Վովկայի երեք կումից շատ էր: Հետո մեղրը փոխանցվեց ինձ, Միշկային, Նատային և, վերջապես, Կոստիկ Սոբոլևին: Նա մեղցորդը լցրեց իր ափսեի մեջ: Ցավոք, Կոստիկի բարեկիրթ վարքը դրությունը չփրկեց: Բանկան դատարկվել էր: Խոհանոցից վերադարձած Ալևտինա Ալեքսեևնան իսկույն նկատեց սեղանին կատարված փոփոխությունը, բայց չբարկացավ, խառնշտեց Միշկայի մազերն ու ասաց.

— Ի՞նչ հիանալի երեխաներ եք:

— Շատ անմիջական ենք,— կցուշորեն ասաց Միշկան:

— Եվ ձեզ լավ եք զգում յոթերորդ երկնքում, չէ՞:

— Մենք մեզ լավ ենք զգում,— Միշկան անմկատելի նշան արեց օպերատիվ խմբին, որ գործի անցնեն,— ինչպես զգում է մարդը Երկրի վրա,— նախադասության վերջին մասը նա արտասանեց բավմանշանակ, շեշտելով,— Երկրի, որը պտտվում է Արևի շուրջը:

— Եվ իր առանցքի շուրջը,— Վովկա Տրուշինը վեր կացավ աթոռից և տեղում պտույտ արեց:

Տոմկա Բուլկինան սկսեց պտույտ գալ սեղանի շուրջը: Առաջին պտույտն անելուց հետո նա բացատրեց.



Նկ. ՍԱՐՈ ԿԱԼԵՆՑԻ

վարքագծով նվաճենք նրա բարեհաճությունը: Վճռեցինք օպերատիվ խմբի աշխատանքը վարել նրբորեն և զգույշ, որպեսզի ծեր կինը գլխի չընկնի ու չնեղանա:

Դուռը մեր առաջ բաց արեց ինքը՝ Նատայի տատիկը, որին, ի դեպ, ամենևին չէր սազում ծեր բառը, այնքան ջահել տեսք ուներ:

— Ա՜յ քեզ կորիձներ,— միրավիր բացականչեց տատիկը:— Նա՛տա, հյուրեր են եկել: Եկեք ծանոթանանք: Իմ անունը Ալևտինա Ալեքսեևնա է, իսկ ձե՞րը:

— Զանազան,— ասացի ես և հասկացա, որ հիմարություն եմ դուրս տվել:

Բայց Ալևտինա Ալեքսեևնան չնեղացավ, ընդհակառակը, զվարթացավ: Նա մեզ նստեցրեց սեղանի շուրջը և թեյով հյուրասիրեց: Թեյի հետ մի մեծ բանկա մեղր մատուցեց: Մենք աշխույժ կրույց էինք անում, ոչ մի վայրկյան չմոռանալով, որ մեզ պետք է պահենք վայելուչ և կիրթ ու խելացի մարդկանց տպավորություն թողնենք:

Ճիշտն ասած, հաճելի տպավորություն թողնելուն մեզ շատ էր խանգարում մեղրը: Մեղրն այնքան լավն էր ու գայթակղիչ, որ հա ուզում էիր ուտել: Բայց մենք հասկանում էինք, որ ինչքան շատ ուտենք բնության այդ պարգևը, այնքան դժվար պիտի լիներ ապացուցել մեր օրինակելի վարքագիծը:

Ներքին լարված պայքարը մեզ բոլորիս հալից գցել էր: Շուտով Վովկա Տրուշինի ներվերը վերջնականապես շարքից դուրս եկան: Երբ Ալևտինա Ալեքսեևնան սենյակից դուրս եկավ, որպեսզի թեյամանը դնի կրակին, Վովկան «գիտությունը լույս է, տգիտությունը՝ խավա՜ր» գոչելով, հափշտակեց մեղրի բանկան ու երեք հիմնավոր կում արեց: Վովկայի ձեռքից բանկան խլեց Տոմկա Բուլկինան: Նա նույնպես երկու կում արեց, որոնցից

— Արևի շուրջը պտտվում են ուրիշ մոլորակներ նույնպես: Օրինակ, Վեներան:

— Նաև Մարսը:— Ես էլ սկսեցի վազել սենյակում, ավելի լայն ուղեծիր գծելով:

Իբրև Մերկուրի վազում էր Նատան, Երկիրը Վովկան էր, Կոստիկ Սոբոլևը սուրաց իբրև Յուպիտեր: Սատուրնը ներկայացավ Միշկա Սապոնովի կերպարանքով: Այս առեղծվածային մոլորակին ավելի նման լինելու համար, Միշկան վերցրեց Նատայի օղակը և պտտեցրեց գոտկատեղի շուրջը: Այդ օղակը հեռավոր կերպով հիշեցնում էր Սատուրնի հռչակավոր շրջանակը: Վեցերորդ մոլորակը ներկայացնելու համար Միշկան վազեց մինչև խոհանոց՝ Սատուրնը գրեթե տասն անգամ հեռու է Արևից, քան մեր Երկիրը:

— Հաճելի է,— նկատեց Ալևտինա Ալեքսեևնան, երբ մենք վերջացրինք երկնային մարմինների շարժումն ու նստեցինք սեղանի շուրջը:— Բայց ու՞ր են Ուրանը, Նեպտունն ու Պլուտոնը: Ու՞ր են կորել դրանք:

Ալևտինա Ալեքսեևնայի դիտողությունը մեզ ցնցեց: Եթե կաթից պատրաստված կոկտեյլի ու ֆլոմաստերի մասին տեղեկությունները դեռևս չէին թափանցել գյուղ, տրամաբանական էր ենթադրել, որ Արևային սիստեմի ամենից հեռավոր մոլորակների մասին նրանք առհասարակ չպետք է իմանային: Բայց արի ու տես, որ գիտեն:

Շփոթմունքը հաղթահարելով, Միշկան Ալևտինային բացատրեց, թե ինչու մենք չկարողացանք ցույց տալ Ուրանի, Նեպտունի և Պլուտոնի պտույտը: Այդ մոլորակներն Արևից այնքան հեռավորության վրա են գտնվում և, մասշտաբները չխախտելու համար, մեզնից մեկնումեկը ստիպված պիտի լիներ Մոսկվայի ավտոմոբիլային շրջապտույտի ճանապարհով վազելու:



— Աստերոիդների՝ փոքր մոլորակների բանն էլ վատ է,— խոստովանեց Միշկան:— Ինչպես նաև գիսաստղերինը... Շատ են փոքր:

— Ոչինչ, հոգ չէ: Դրանց պատճառով իր կտոր-կըտոր չե՞ք լինելու: Հիմա ես էլի մեղր կբերեմ...— նա գընաց խոհանոց:

— Առաջարկում եմ իջնել Երկիր,— անհանգստացավ Կոստիկ Սոբոլևը:— Քանի դեռ ուշ չի...

Բայց Երկրի վրա էլ միշտ չէ, որ մարդիկ հանգիստ ու հարմար են զգում: Խոհանոցից վերադարձած Ալևտինա Ալեքսեևնայի տված հարցը բոլորին մոլորեցրեց.

— Վաղո՞ւց է, ինչ Տրետյակովյան պատկերասրահում չեք եղել:

— Տրետյակովյա՞ն: Դե, իհա՛րկե,— օպերատիվ խըմբի լռությունից որոշ ժամանակ անց բացականչեց Վովկա Տրուշկինը:— «Ուդարնիկ» կինոթատրոնի մոտ է: Գիտենք:

— Ճիշտ է,— ուրախացավ Ալևտինա Ալեքսեևնան:— Իսկ ո՞ր նկարն է ամենից շատ դուր գալիս քեզ:

— «Անտառի վրիժառուները»,— ասաց Վովկան:— Փայլուն նկար է: Բոլորից ամենալավը:

— Ինչ-որ չեմ մտաբերում:— Նատաշի տատը տըրորեց ճակատը:— Ո՞վ է հեղինակը:

— Ես էլ չգիտեմ: Բայց մի տասն անգամ տեսել եմ:

— Պատմիր այդ քո ամենասիրած նկարի մասին: Գուցե ասես ո՞ր դահլիճում է:

— Գունավոր նկար է... Դե, «Ուդարնիկում» մի դահլիճ կա միայն: Ճեմասրահում երբեմն վավերագրական նկարներ են ցույց տալիս:

Ալևտինա Ալեքսեևնան մի քանի վայրկյան ուզում էր հասկանալ, թե Վովկան ինչի մասին է խոսում, իսկ երբ գլխի ընկավ, ուրախ քրքջաց.

— Իմ ասածը տանձն է, քոնը՝ խնձորը:

Հետո Ալևտինա Ալեքսեևնան պատմեց, թե ինչպես իրենց գյուղում՝ երեխաները թանգարան են սարքել և հավաքել աշխարհի հռչակավոր նկարիչների գործերից շատերի վերատպությունները:

— Ձեր դպրոցը թանգարան ունի՞:

— Մեր ինչի՞ն է պետք,— նեղացած ծոր տվեց Միշկան:— Թանգարանները մեր քթի տակ են: Իսկական թանգարանները... Ուզածդ րոպեին կարող ես գնալ:

— Եվ քանի՛ նման րոպե է եղել.— հարցրեց Նատաշի տատիկն ու, առանց պատասխանի սպասելու, նրանց կողմը հրեց բանկան:— Ինչու՞ մեղր չեք ուտում:

Բայց մեղրն այլևս այնպես համով ու գրավիչ չէր թըվում մեզ: Կարծես անտեսանելի մեկը մի գդալ ձյութ էր լցրել դրա մեջ:

Երբ Ալևտինա Ալեքսեևնան նորից տնտեսական գործերով դուրս եկավ, մռայլ Միշկան բոլորիս կոչ արեց լըռել: Նա ասաց, որ խելացի երևալու միակ ձևը դա է: Միշկա Սապոնովի համար շատ դժվար բան էր նման վճիռ կայացնելը. քառասուն վայրկյանից ավել նա լռում է միայն դասի ժամանակ, այն էլ ոչ բոլոր դասերի:

Բայց մենք չէինք պատկերացնում, թե երբեմն որքան ավելի հետաքրքիր է լռելը, քան խոսելը: Բանն այն է, որ մենք հենց այնպես չէինք լռել, այլ լսում էինք Ալևտինա Ալեքսեևնային, որը պատմում էր իր կենսագրությունը: Դա մի զարմանալի կենսագրություն էր:

Ախր ինչո՞ւ մենք այնքան հազվադեպ ենք լսում մեր տատիկներին ու պապիկներին: Գուցե նրանք ժամանակ չունե՞ն մեզ հասկացնելու: Դե, իհարկե ոչ, ունեն: Իսկ մե՞նք... մենք ժամանակ ունե՞նք նրանց համար... Կամ գուցե մեզ համար ավելի հեշտ է հեռապանդվել նրանց, քան ականջ դնել: Չգիտեմ... Միայն թե այն, ինչ պատմում էր Ալևտինա Ալեքսեևնան, բոլորին հրապուրեց, ինչպես ամենահետաքրքիր գիրքն է գրավում, որը կարդում և չես ուզում վերջանա: Ալևտինա Ալեքսեևնան հիշում էր, թե ինչպես երեսնական թվականներին, երբ բոլորովին ջահել աղջիկ էր, ավարտել է տրակտորիստների կուրսերը ու նստել «երկաթե ձիու» վրա, ինչպես այն ժամանակ ասում էին տրակտորին: Եվ թե ինչպես մեր Ալևտինա Ալեքսեևնան մրցում էր նույնիսկ Պաշա Անգելինայի հետ, այն հեռավոր տարիների հռչակավոր տրակտորիստուհու, որը երկրում առաջին տրակտորային բրիգադի ըստեղծողն ու կազմակերպիչն էր: Շքանշաններն էլ միասին են ստացել, Կրեմլում, և այդ շքանշանները նրանց է հանձնել Միխայիլ Իվանովիչ Կալինինը:

Երբ Ալևտինա Ալեքսեևնան մոտեցել է «համամիութենական ավագին», սաստիկ հուզվել ու վախեցել է: Այնքան է շփոթվել, որ իր ձեռքը սեղմող Միխայիլ Իվանովիչին «շնորհակալություն» ասելու փոխարեն, իր համար էլ անսպասելի, մրմնջացել է.

— Խնդրեմ:

Իսկ Միխայիլ Իվանովիչը Ալևտինա Ալեքսեևնային շատ լուրջ ասել է.

— Շնորհակալություն:

Դուրս է եկել հակառակը:

— Վա՛յ, ես սխալվեցի,— բոլորովին իրեն կորցրել է Ալևտինա Ալեքսեևնան:

— Բայց ես չսխալվեցի, ո՛չ,— ժպտացել է Կալինինը: Նա կրկնել է.— Շնորհակալություն:

Հետո մեծ ընդունելություն է եղել Կրեմլյան պալատում: Շատերն են ելույթ ունեցել, և ինչ-որ մեկն ասել է, որ տրակտորը գյուղի ամենաժամանակակից նախանըշանն է, իսկ երբ այդ տրակտորը վարում է կինը, դա արդեն ավելին է, քան ժամանակակից լինելը, դա ապագան է, որ դարձել է ներկա: Այստեղ Միխայիլ Իվանովիչ Կալինինը դարձել է Ալևտինա Ալեքսեևնայի կողմը և, ակնոցների ապակիները փայլեցնելով, հանկարծ սարսափելի-սոսկալի աչքեր է սարքել, ինչպես մեծերը երբեմն անում են երեխաներին իբրև թե վախեցնելու համար: Միայն թե հիմա նա շատ երջանիկ էր ու ոչ մի բանից չէր վախենում...

Մի քանի տարի անց պայթել է պատերազմը: Նատաշի տատիկը, որն այն ժամանակ իհարկե դեռ տատիկ չէր, գնացել է պարտիզանների մոտ՝ Բրյանսկի թավուտ անտառները: Իսկ երբ պատերազմը վերջացել է, նրան կըրկին կանչել են Մոսկվա և նա նորից է հանդիպել Միխայիլ Իվանովիչ Կալինինին: Բայց Կալինինը նրան չի ճանաչել: Ըստ երևույթին, այն պատճառով, որ մարտական շքանշան ընդունելիս Ալևտինա Ալեքսեևնան բոլորի նըման ասել է. «Շնորհակալություն»: Ասենք. դա հավանաբար այնքան կարևոր չի: Չէ՞ որ առաջավոր գծում մարտնչած կին-մարտիկներին ուղղված Կալինինի խոսքը վերաբերել է նաև անձամբ նրան՝ Ալևտինա Ալեքսեևնային:

Հետո Ալևտինա Ալեքսեևնան սովորել է: Ավելի հետո իր գյուղի դպրոցում սովորեցրել է ուրիշներին, և նրա աշակերտներից մեկը հիմա ֆիզիկոս է, մյուսը՝ օդաչու, երրորդը՝ իսկական տիեզերագնաց: Ա՜յ, թե ինչ ժամանակակից մասնագիտություններ ունեն նրանք:

— Ա՜խ, էսպիսի մի տատիկ ունենայի,— ասաց Վովկա Տրուշկինը, երբ հրաժեշտ էինք տալիս:

— Դու տատիկներ ու պապիկներ չունե՞ս,— հարցրեց Ալևտինա Ալեքսեևնան:

— Ամեն մեկից երկուսը,— պարծեցավ Վովկան:— Ընդամենը՝ չորսը:

— Ովքե՞ր են նրանք, ի՞նչ են անում:

— Դե՜... էնպես... չգիտեմ... թոշակառուներ են:

— Վաղո՞ւց են թոշակի անցել:

Վերջին հարցը Վովկային չափազանց զարմացրեց:

— Ամբողջ կյանքում,— վստահ ասաց Վովկան:

*Թարգմ. ՍՈՆԱ ԱՅՈՒՆՑԻ*




*ԼԵՎՈՆ ՀԱԽՎԵՐԴՅԱՆ*
*Բանասիրության դոկտոր*

## 12. ՉԿԱՆ ԳԵՂԵՑԻԿ ԵՎ ՏԳԵՂ ԲԱՌԵՐ, ԿԱՆ ԻՐԵՆՑ ՏԵՂԸ ԴՐՎԱԾ ԵՎ ՉԴՐՎԱԾ ԲԱՌԵՐ

Ի՞նչ կա ավելի տհաճ, քան աղբը: Բայց արի ու տես, որ մասնագետների համոզմամբ աղբն իբրև այդպիսին գոյություն չունի, այլ գոյություն ունի իրենց տեղը չգտած իրերի ու նյութերի կույտ, որին աղբ են ասում: Ամեն օր մենք աղբ ենք թափում, դրա մեջ ինչքա՜ն ասես թուղթ, ուտելիքի մնացորդներ, դժբախտաբար՝ նաև հաց: Բայց չէ՞ որ առանձնացվելու դեպքում դեն ածվող թուղթը կդառնա մաքուր հումույթ՝ վերստին թուղթ արտադրելու համար, օրգանական նյութերը՝ պարարտանյութ, թափվող հացը՝ անասնակեր: Այդպես էլ մնացած ամեն ինչ, առանց բացառության: Եվ, իհարկե, այդպես էլ պիտի արվի, բայց, ցավոք, դեռևս չի արվում:

Իրենց տեղը չդրված բառերի կուտակումն այլ բան չէ, քան բառակույտ: Բայց հենց որ դրվում են իրենց տեղը՝ ստանում են իմաստ և կարևորություն: Անճաշակ ու գռեհիկ լինում են ոչ թե բառերը, այլ դրանց կիրառությունները: Մեկ էլ տեսար մի «տգեղ» բառ այնպես է գտնում իր տեղը, որ թվում է պարզապես անփոխարինելի: Գրողները, իհարկե՝ ճշմարիտ գրողները, այդ գործի վարպետներն են: Կարելի է նույնիսկ ասել՝ գրողի վարպետությունը չափվում է բառն իր տեղը դնելու հմտությամբ:

Ի՞նչ կասեք՝ տգե՞ղ է կլոռ բառը: Կարծես թե այո: Այդ դեպքում լսենք Թումանյանին.

Մի գյուղացի իրենց գյուղում
Խանութ սարքել բան էր ծախում:
Օրվան մի օր մոտիկ գյուղից,
Մահակն ուսին, շունն ետևից
Ներս է մտնում մի կլոռ չոբան.
— Բարի օր քեզ, ա՛յ խանութպան...

Ինչպե՜ս ստույգ և միանգամից այս կլոռ մակդիրը մեզ պատկերացում է տալիս կերպարի մասին, արտահայտում նրա էությունը՝ դատելով դեպքերի հետագա զարգացումից: Եթե այդպես է՝ այլևս ի՞նչ «տգեղ»: Գուցե և ասեն՝ դե՛, Թումանյանի լեզվին ժողովրդական դարձվածքները, բարբառային բառերը հատուկ են առհասարակ: Լա՛վ: Դառնանք, ուրեմն, բյուրեղյա մաքրության լեզվի վարպետ Վահան Տերյանին:

Առանձին առնված եթե համեմատելու լինենք հովիվ և չոբան բառերը, իսկույն կասենք՝ առաջինն ավելի «գեղեցիկ» բառ է, քան երկրորդը, որ կոպիտ է և, մանավանդ, օտարամուտ: Հիմա լսենք Տերյանին.

Լինեի չոբան սարերում հեռու,
Գայիր, անցնեիր վրանիս մոտով,
Իրար նայեինք անուշ կարոտով,
Քնքուշ ժպտայինք հանկարծ իրարու...

Հիմա փորձենք այստեղ չոբան «տգեղ» բառը փոխարինել հովիվ «գեղեցիկ» բառով: Կլինի՞: Ինչո՞ւ չէ, մանավանդ, որ երկուսն էլ երկվանկանի բառեր են, բանաստեղծության չափը չի խախտվի: Ճի՛շտ է, չափը չի խախտվի, բայց Տերյանի մտահղացումը կխախտվի, այլապես նա ինքը կարող էր այդպես վարվել: Ինչո՞ւ, մի՞թե հովիվն ու չոբանը նույնը չեն: Առհասարակ՝ այո՛, դրանք հոմանիշներ են, բայց բանաստեղծական այս հյուսվածքի մեջ նույնը չեն: Անհամար գրքերից, մտքի լարված աշխատանքից, մտավորական մարդու ապրելակերպից հոգնած մի պահի Վահան Տերյանին համակել է անհուն մի կարոտ, անդիմադրելի ձգտում դեպի մանկության վայրերը, հայրենի Ջավախքի լեռնական կոշտ ու կոպիտ կենցաղը, անասնապահ մարդկանց անպարդ կյանքը՝ առանց իմացության տանջալի որոնումների: Եվ, իհարկե, պետք է դրական պատասխան տալ լեզվագետ Ռաֆայել Իշխանյանի հարցումին՝ չոբան բառն այստեղ «քաղաքակրթությունից հեռու լինելու ցանկություն չի՞ մարմնավորում»: Այո՛: Ուրեմն՝ չոբան: Այլապես Տերյանը հիանալի գիտեր հովիվ բառի տեղը և հիանալի էլ գործի է դրել, երբ կամեցել է ուրիշ՝ հովվերգական տրամադրություն արտահայտել.

Հովիվներն այնտեղ կրակ են արել
Սարերի վրա — օ՜, անուշ հեռու,
Ձայնում են անվերջ մթնում իրարու...

Այստեղ էլ չոբան բառն իր տեղում չէր լինի, ինչպես որ իր տեղում չէր լինի այն քնքուշ հովվերգական երգում, որ այնպես ախորժալուր հնչում է երբեմն.

Հովիվը սարում տխրեց,
Սիրո երգը նվագեց՝
Երգը վառ այտերին,
Երգը բոց աչքերին,
Երգը վարդ օրերին:
Ա՜յ, խե՛ղճ հովիվ, քեզ բաժին
Խոր ձորեր մնացին,
Հինգալա՜, հինգալա՜...

Փորձեցեք այստեղ հովիվ-ը փոխարինել չոբան-ով, և կզգաք, թե ինչպես սա գլուխն առած փախչում է այս հովվերգական ոտանավորի և մեղեդու միջից:

Բառերի «տգեղ» և «գեղեցիկ» լինելու մասին իրենց հնչյունային արտահայտությամբ դատել նույնպես չի կարելի: Ի՞նչ քնքուշ բովանդակություն է ներդրված խանդաղատանք բառի մեջ, բայց տեսեք որ դա բնավ էլ քնքուշ չի հնչում: Ի դեպ, ռուս լեզվաբաններից մեկը ռուսերեն չիմացող մի իտալացու հարց է տվել, թե իր լսողական ընկալմամբ ի՞նչ կարող էր նշանակել надежда բառը: Իտալացին ասել է՝ դա պետք է որ շատ դաժան իմաստ ունենա: Այսպես է եղել հույս բառի ընկալումն օտար ականջով: Իսկ երբ այդ նույնը հարցրել է телятина բառի վերաբերյալ, որ նշանակում է հորթի միս, իտալացին պատասխանել է՝ դա անպայմա՛ն սիրո մասին կլինի: Ահա թե ինչքա՛ն անսպասելի կարող են լինել բառերի զուտ հնչյունային ընկալման հետևանքները:

Ամեն մի բառ ամեն մի ազգային լեզվում ունի այն իմաստը, որ «պայմանավորված» է տվյալ ազգի մեջ: Եվ ահա միմյանց չափազանց մոտ բառեր տարբեր լեզուներում կարող են տարբեր իմաստ ունենալ, ասենք, դեդ ռուսերեն նշանակում է պապ, անգլերեն դեդ կամ դեդդի նշանակում է հայր, իսկ վրացերեն դեդա նշանակում է մայր:

Ամեն մի լեզու ունի իր սեփական քերականական ու հնչյունային արտաբերման օրենքները, համակարգը՝ սիստեմը, որին ենթարկվում է ամեն ինչ: Նույնիսկ բնաձայնական հնչյունները: Հայտնի բան է, որ աշխարհի բոլոր ծագերում աքաղաղները նույն կերպ են կանչում: Մինչդեռ, ինչպես պարզել են լեզվաբանները, տարբեր ազգեր այդ նույն աքաղաղին ստիպում են տարբեր կերպ կանչել, ավելի ճիշտ՝ տարբեր կերպ են վերարտադրում նրա կանչը: Հայերի «ծուղրուղուն» ռուսները դարձնում են «կուկարեկու», գերմանացիները՝ «կիկերիկի», ֆրանսիացիները՝ «կոկորիկո»: Սա դեռ ոչի՛նչ, սրանց մեջ դեռ որոշ նմանություն կա: Իսկ ի՞նչ կասեք, եթե իմանաք, որ իտալացիների «ծուղրուղու»-ն հնչում է «չիկկիրիչի», անգլիացիներինը՝ «կոկ-է-դուդլ-դու», չինացիներինը՝ «վո-վո»:

Կամ, ահա, խնդրե՛մ, ժամացույցի նույն «թիկ-թակը» բաշկիրներն արտաբերում են «տեկ-տեկ», կիրգիզները՝ «չըկ-չըկ», կորեացիները՝ «չեկկակ-չեկկակ», իսկ չինացիները՝ «դիդի-դադա»: Բայց չէ՞ որ ժամացույցի ձայնը նույնն է ամենուրեք:

Ո՞րն է այս ամենից ավելի գեղեցիկը կամ հարազատն աքաղաղի կամ ժամացույցի ձայնին: Մի՛ շտապեք ընտրել: «Ծուղրուղուն» մեր ականջին հնչում է նույնքան հարազատ, ինչքան «վո-վո»-ն՝ չինացիների: Ամեն մեկը և՛ հարազատ է, և՛ գեղեցիկ իր ազգային միջավայրում, իր ազգային լեզվական համակարգում:

Այդպես էլ ամեն մի բառ տգեղ կամ գեղեցիկ լինում է ոչ թե ինքնին, այլ տեքստում, շարահյուսության մեջ, իր լեզվական միջավայրում, իր համակարգում: Այստեղ է, որ երևում է՝ բառի գեղագիտությունը, անկախ այն բանից, թե դա գրական լեզվից է առնված, թե գրականության լեզվից: Մեկը նեղ հասկացություն է, մյուսն՝ ընդգրկուն:

Իսկ դրանք միանգամայն տարբեր բաներ են:

Այդ մասին՝ հաջորդ անգամ:

ՌՈՒԲԵՆ ԱՆՂԱԼԱՏՅԱՆ

## ԲԱՐԻ ԼՈՒՅՍ ԱՍԱ

Գարնան գիշերը
Կարապ է մի սև...
Եվ անտառներում,
Դաշտերում արձակ,
Արահետ ու թուփ,
Տերև ու թռչնակ
Լուռ ծվարել են
Նրա թևի տակ:
Իսկ քաղաքն ասես
Մի բողբոջ լինի,
Ուռճացող բողբոջ՝
Սրտում գիշերի...
Նա առավոտյան
Լցնում է հոգին
Բուրմունքով անուշ
Մանուշակների:

Քո զգաստության
առավոտն է սա:
Բարի լույս ասա:

## ՕՐՈՐՈՑԱՅԻՆ

Խոտի ցողունին շաղն է պսպղում,
Լույսի թևերն է առավոտն ուղղում:

Թիթեռնիկն ահա՝ Մոխրոտիկը ժիր,
Ճախրում է անհոգ խաղերին տրված,
Սուզվում է ապա սիրտը կակաչի
Ու մնում շաղի կաթիլին փարված:

Թերթիկն է ընկնում խատուտիկ ծաղկի՝
Ինչպես կաթիլը զոհվածի արյան,
Եվ կոչ է տալիս
Գիշերը նրան:

Գալիս է հեռվից քամին շնկշնկան
Իր նվագներով մեղմ ու միալար,
Որ օրորոցի երգեր շշնջա
Թիթեռի համար,
Կակաչի համար:

Ռուս. թարգմ. ՆԱՆՍԵՆ ՄԻՐԶԱՅԵԼՅԱՆԸ

## ԳԱՐՆԱՆ ՇԱՂ ՈՒ ՇՈՂԸ

ՍԱՐԳԻՍ ԽԱՐԱՋՅԱՆ

Ամպը ամպ է կլանում,
Ու բացվում է հողը,
Ծիծեռնակներն են խմում
Գարնան շաղ ու շողը:
Գառնուկներին է կանչում
Կանաչ արահետը,
Աղբյուրներն են հնչում,
Աղմկում է գետը:
Բարդիներն են իրենց .
Կատարները ճկում,
Եվ հին անտառի մեջ
Ձայն է տալիս կկուն:



# Ամպրոպ

ԱՐՄՐՈՒՆԻ ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ
(ՀՍՍՀ ժող. դերասան)

Նկ. ԱԼԵՔՍԱՆԴՐ ԳՐԻԳՈՐՅԱՆԻ

Տասնիինգ թվականի արհավիրքներից հետո մեր ընտանիքի մի մասը հանգրվանեց Թիֆլիսում: Սկզբում տեղավորվեցինք «Աղբյուր-Տարազ» մանկական ամսագրի խմբագիր-տնօրեն, ճանաչված հասարակական գործիչ Տիգրան Նազարյանցի կազմակերպած գաղթականների հանրակացարանում: Դա տարբական հարմարություններից զուրկ, ընդարձակ պահեստ-սարայի նման մի բան էր, որի ամեն մի անկյունում, հենց հատակին, ժամանակավորապես ծվարել էին մեզ նման բեկորներ: Մայրս գործի ընդունվեց, և մենք (մայրս, ես և փոքր եղբայրս) տեղափոխվեցինք մոտակա մի տուն. վարձեցինք տանտիրոջ ցախատունը, ուշքի եկանք, քիչ-շատ տանելի նիստ ու կաց, կենցաղ ստեղծվեց և ահ ու տագնապի մեջ, անհամբեր սպասում էինք մեր ընտանիքի մյուս անդամներին, որոնց կորցրել էինք գաղթի ճանապարհներին:

Մայրս աշխատանքի էր ընդունվել ինչ-որ գործարանում: Ամսվա մեջ մեկ թե երկու շաբաթ գիշերային հերթափոխի էր գնում, իսկ մենք ժամացույց չունեինք: Ավելացնեմ, որ ժամացույցը բացառիկ հարստություն էր այն ժամանակներում:

Մի գիշեր արթնացա, տեսնեմ հագնվում է:

— Մա՛, ո՞ւր,— քնատ հարցնում եմ ես:

— Քնի՛ր, քնի՛ր,— շշուկով ասում է մայրս,— ես գնամ ժամացույցը նայեմ, որ գործից չուշանամ... Որ ուշանամ, բալա՛ ջան, դուրս կանեն... Դու քնի՛ր, քնի՛ր...

Այսպես ամեն գիշեր մի քանի անգամ արթնանում, հագնվում, գնում էր մեր կացարանից 50—60 քայլի վրա գտնվող անկյունի դեղատան ժամացույցը նայում, եթե շուտ էր լինում, գալիս, հանվում, պառկում էր, մի փոքր ննջում ու նորից...

Այսպես շարունակվեց մի քանի ամիս:

Մի գիշեր էլ դեղատան ժամացույցն է անհետանում տեղից, թե՞ լավ չի տեսնում մայրս, ինչպես է լինում, սխալվում է, ուշանում ու հեռացվում է աշխատանքից:

Ինչ խոսք, դա մեծ հարված-վիրավորանք էր մորս վշտահար-խոցված սրտի համար:

Եվ ահա նստած է մայրս չոր թախտին, գլխաշորի տուտը ամուր սեղմած աչքերին, լուռ, խորքից «քանդվելով» արտասվում է:

Դա ուրիշ լաց էր... Մանուկ իմ հոգին զգում էր, որ մորս այդ լացը, ուրիշ լաց էր... Այդ լացը միայն գործատեղից վռնդվելու լաց չէր, ո՛չ, գործ կճարվեր: Վերջապես այլոց տներում լվացք անելը կար ու կար: Դա հալածված, որբացած, վիրավորված սրտի դառնաղի արցունքներ էին: Նրա այդ լուռ, խեղդվող, արտասուքառատ ողբը ավելի մե՛ծ, հեռուներից եկող պատճառներ ուներ: Պոնկե-պռունկ լեցված սրտի հրաբուխ էր դա. փլվել-քանդել էր պատ ու պատնեշ՝ հեղեղվում էր...

Նա արտասվում էր՝ վաղ մանկուց երեք քույրերով, դեռևս փոքրիկ աղջնակներ որբանալու, (նրանք իրենց ծնողների ու հարազատների կացնահար ջարդը տեսել էին մութ անկյունից, անկողնու ծալքերում թաքնված), այժմ էլ ահա կորցրած մանր ու մեծ զավակների, ամուսնու, շեն տուն ու տեղի, գաղթի ճանապարհների հրեշավոր արհավիրքների, արյուն-ավերի, անթաղ դիակների, վերջապես դժոխային տառապանքների համար էր ողբում նա:

Ու թափվում-թափվում էին առատ արտասուքները:

— Մա՛մ, մի՜ լա, մի՜ լա,— խեղդված ձայնում եմ ես:

Իսկ նրա արտասուքները խոշոր-խոշոր առկայծում, ցոլում են, գլոլ-գլոլ թափվում, գնում կորչում են մաշված զգեստի ծալքերում:

Քիչ անց, կարծես դառնությունից մաքրված, քաշում է գլխաշորը ժամանակից շուտ ճերմակած մազերի վրայից, սրբում թաց դեմքն ու լռում, մի կետի նայելով՝ լռում-քարանում նստած տեղը:

Կարծես ամպրոպ էր՝ դադարեց:

Մորս այդ ողբը սրբող-մաքրող, հոգին հովացնող մի ողբ էր, որ երբեք չի մոռացվի:

# ԽՈՍՏՈՎԱՆՈՒԹՅՈՒՆ

*ՆՈՒՆԵ ԳՐԻԳՈՐՅԱՆ*

Տասներորդ դասարանցիների ավարտական երեկոն էր: Հրաժեշտ էին տալիս դպրոցին: Իսկ հրաժեշտը միշտ էլ թախծոտ է լինում:

Հասմիկը մենակ պատուհանի մոտ կանգնած, հայացքն ուղղել էր պարողների կողմը:

— Ե՛կ մենք էլ պարենք,— մոտենալով նրան, առաջարկեց Սամվելը:

Հասմիկը սթափվեց.

— Չէ՛, չեմ ուզում... Ինձ դիտելն ավելի է հաճույք պատճառում:

— Իսկապե՞ս,— կարմացավ Սամվելը:— Ասենք, հա՛, ես երբեք չեմ տեսել, որ դու պարես:

Հասմիկը ոչինչ չասաց: Նա շատ էր սիրում պարել և մի քիչ նախանձում էր լավ պարողներին: Բայց, չգիտես ինչու, նրան թվում էր, որ իրեն չի սազում պարել, որ ինքը գեղեցիկ չի պարում և, եթե հանկարծ համարձակվի պարել, ապա շատ ծիծաղելի կլինի:

— Դե լավ, չես ուզում, չենք պարի: Իսկ ես քեզ չե՞մ խանգարում:

— Բոլորովին,— մի տեսակ վախեցած ասաց Հասմիկը:

— Մեր կյանքի տասը տարին անցկացրեցինք այս պատերի մեջ: Իսկ հիմա պետք է ընդմիշտ հրաժեշտ տանք:

— Ինչու՞ ընդմիշտ, մեկ-մեկ կգանք, կհավաքվենք, կհանդիպենք...— տխուր ասաց Հասմիկը:

— Գալը, կգանք, բայց արդեն հյուրի իրավունքով: Դու չե՞ս տխրել, որ բաժանվում ենք,— անսպասելի հարցրեց Սամվելը:

— Ի՞նչ ասեմ... իհարկե, տխրել եմ, և ինձ թվում է, թե այնքան եմ մեծացել, որ գլուխս կպչում է ամպերին:

— Գուցե ամպե՞րն են այնքան ցածրացել, որ հասել են գլխիդ,— փորձեց սրամտել Սամվելը:

— Դու որոշումդ չե՞ս փոխել, ուզում ես գնալ բժշկական ինստիտո՞ւտ,— քիչ լռելուց հետո հարցրեց Հասմիկը:

— Ո՛չ, չեմ փոխել: Դա եղել է ու մնում է իմ երազանքը: Իսկ դու դեռ չե՞ս որոշել:

— Դեռ չեմ կողմնորոշվել: Հայրս ուզում է բանասիրական տամ դիմումս, մայրս՝ կենսաբանական...

— Իսկ դու՞... եթե այնքան մեծ ես, որ գլուխդ ամպերին է հասնում, կարող ես ինքդ որոշել ուր գնալը: Սովորողը դու ես լինելու:

— Ճիշտ է... բայց դեռ...

— Այնքան լա՛վ եմ հիշում քեզ առաջին դասարանում: Դու ունեիր երկար հյուսքեր, և միշտ քո մազերին կապված էր լինում լայն ու ճերմակ ժապավեն:

— Ես էլ՝ քեզ եմ շատ լավ հիշում, մայրիկդ քեզ հագցնում էր կարճ, սև տաբատ: Եվ երբ դու գրատախտակի մոտ դաս էիր պատասխանում, այնքա՜ն վստահ և այնքա՜ն պրնգուն էր ձայնդ:

— Իսկ հիշու՞մ ես, որ մի քիչ մեծացանք, ես հաճախ քո մազերը քաշում էի, քանդում ժապավենդ:

— Ես հենց քո պատճառով էլ կտրեցի մազերս:

— Իսկ հիշու՞մ ես, երբ ութերորդ դասարանում էինք, դու մի նամակ ստացար, որ Գայանեն փախցրեց քո ձեռքից ու սկսեց ծիծաղել...

— Հիշում եմ, իհարկե, հիշում եմ,— Հասմիկը ժպտաց, իսկ աչքերի թախիծն ավելի խորացավ:

— Լավ էր անունս չէի գրել...

— Բայց ես իմացա...

— Իսկապե՞ս... Զգալ չտվեցիր...

— Որոշեցի, որ պետք չէ...

— Որոշեցիր... և կարողացար որոշումդ կատարե՞լ... Եկ հիմա էլ որոշիր ու միասին դիմումներ տանք բժշկական ինստիտուտ և միասին էլ քննությունների պատրաստվենք:

Հասմիկը լուռ էր: Չկարողացավ անմիջապես կողմնորոշվել: Միայն աչքերի թախիծը կարծես խորացավ ու միաժամանակ դարձավ կայծկլտուն:

Նկ. ԱԼԵՔՍԱՆԴՐ ԳՐԻԳՈՐՅԱՆԻ



# ԺՊԻՏՆԵՐ

## ԱՐՔԱՅԱԿԱՆ ՈՒՂԻ ՉԿԱ



Հին հունական փիլիսոփա Էվկլիդեսը մի անգամ իր թագավորին բացատրում էր երկրաչափության գաղտնիքները:

— Չի՞ կարելի արդյոք այս գիտությունը ավելի հեշտ յուրացնելի դարձնել,— պարապմունքից հոգնելով հարցրեց թագավորը:

— Գիտության մեջ արքայական ուղի չկա,— պատասխանեց գիտնականը:

## ԳՐՔԱՍԵՐԻ ՑԱՆԿՈՒԹՅՈՒՆԸ

Ֆրանսիացի դը Բեղուարը նշանավոր գրքասեր էր, գրքեր հավաքող ու գնահատող: Մի անգամ նա ապշեցրեց բոլորին՝ կազմակերպելով իր անգին գրադարանի վաճառքը: Սակայն աճուրդի եկածները մի անգամ ևս զարմացան, իմանալով, որ բոլոր գրքերը գնել է... հենց ինքը՝ գրքերի տերը:



— Ինչու՞ այդ բանն արեցիք,— հարցրին դը Բեղուարին:

— Ես ցանկանում էի հիանալ իմ գրքերով և նույնպիսի հնարավորություն ընձեռել մնացած մարդկանց համար,— պատասխանեց գրքասերը:

## ՄԱՐՏԻՑ ՀԵՏՈ

Ռուսական ռազմական ակադեմիայի պրոֆեսոր Կլադոյին մի անգամ դասախոսության ժամանակ հարցրին, թե ինչ տարբերություն կա հաղթանակի ու պարտության միջև:



— Մարտի ավարտից հետո նրանց միջև եղած միակ տարբերությունը հոգեկան վիճակների տարբերությունն է,— պատասխանեց պրոֆեսորը:— Իսկ ինչ վերաբերում է նյութական կորուստներին, ապա, սովորաբար, տարբերությունը մեծ չէ:

*Նկ. ԿԱՐԵՆ ՄԻՔԱՅԵԼՅԱՆԻ*

Անհնարին է, իհարկե, ապացուցել, որ կար մի կով, որը, ճիշտ է, չէր խոսում, բայց հասկանում էր մարդկանց լեզուն: Երբ նոր էր սովորել առաջին բառերը՝ մի անգամ փորձեց խոսել, սակայն բառերի փոխարեն բառաչ եկավ բերանից և ինքն իր վրա ծիծաղելով՝ որոշեց այլևս նման բաներ չանել:

Դեռ հորթ էր, որ սկսեց հասկանալ «արի», «գնա», «ջուր», «խոտ» բառերը և առաջին պարզ արտահայտությունները՝ «դուռը բաց», «քշիր դրան», «դեն կորիր», ապա համեմատաբար ավելի բարդ դարձվածքներ՝ «անտեր, ինչ ես ցցվել այստեղ», «դրան տեսեք, կանգնել է ու աչքերը պլշել», հետո էլ ավելի բարդություններ՝ «աշխարհ, աշխարհ...» Կովը սկսեց հասկանալ, որ կան առանձին բառեր, որ շատ ավելի միտք և իմաստ ունեն, քան որոշ երկար նախադասություններ: Երբ մարդիկ շատախոսում էին, կովը գիտեր, որ դա դատարկաբանություն է, միջամտում էր որևէ ձևով, սակայն նրան քշում էին տարակուսանքով.

— Սա ի՞նչ է անում, խոտը թողել, եկել տնկվել է կողքներիս...

Իհարկե, չէին կռահում, որ կովը լսում է իրենց: Կովին դուր էին գալիս հատկապես խելացի խոսակցությունները, նա շատ բան գիտեր և ցանկանում էր ավելի շատ իմանալ:

Նրա առաջին տերը տրակտորիստ էր, երեկոյան այդ նողկալի հոտ ու նողկալի ձայներ արձակող պանգվածը բերում և կանգնեցնում էին հենց գոմի բակում: Երբեմն նրանք նորոգում էին և հայրը որդուն ասում էր.

— Թրթուրը պետք է փոխել...

Հորթը մոտ էր գնում, որ տեսնի, թե թրթուրը ինչին են ասում, որովհետև նա դա ևս ցանկանում էր իմանալ:

Նրան քշում էին, տան տղան ոտքերով նրա չլեբին խփելով հեռացնում էր, սակայն քիչ անց հորթը լսում էր մեկ այլ անծանոթ բառ.

— Ռադիաոորը տաքացել է...

Նա ցանկանում էր իմանալ, թե ո՞րն է ռադիատորը, բայց կրկին քշում էին նրան:

Այդպես էլ տերերը չհասկացան, որ իրենց հորթուկը եզակի մի անասուն է, վաճառեցին ուրիշին, և այս մեկը ուսուցիչ էր, հորթը պիտի մեծանար, կով դառնար, ծներ, որպեսզի ուսուցչի երեխաները կաթ ունենային:

Սրանք դպրոցական տարիքի երեխաներ էին, երբեմն հորթին արոտներ տանելիս՝ ճանապարհին ոտանավորներ էին ասում, և այսպես հորթի համար բացվեց մի նոր աշխարհ: Նա զարմանում էր բառերի հնչեղության վրա, պցում էր, որ այս խոսքերը նման են երաժշտության, և պետք է ասել, որ մարդկանց լսելու հետ՝ նա շատ էր սիրում նաև երաժշտություն:

Երբ հեռուներից գալիս էր ընդունիչի ձայնը, թողնում էր արոտն ու մոտ գալիս, շատ չէր մոտենում, որ չքշեն: Եվ, իբր, արածում է, գլուխը կախ լսում էր: Երբ հաղորդավարն ասում էր՝ «Լսեցեք համերգ», նրա տրամադրությունը միանգամից փոխվում էր, իսկ երբ՝ «Համերգը վերջացավ», սկսում էր արածել: Առանձնապես շատ էր սիրում իրիկնային համերգները: Գյուղի ակումբին փակցված բարձրախոս կար, ձայնը մինչև այստեղ էր հասնում: Նա նստած, երազկոտ որոճալով՝ լսում էր աշխարհի լուրերը: Մի անգամ գիտական հաղորդում եղավ՝ կենդանական աշխարհի հետ կապ ստեղծելու մասին: Նա լսում էր ու մտքում ժպտում:

Երեխաներից մեծը փոքրին դաս էր սովորեցնում՝ թվաբանություն, աշխարհագրություն, քերականություն, իսկ նրանց հայրիկը պատմության դասատու էր, իր մոտ եկած ծույլերի հետ պարապում էր առանձին ու երբ սրանք պատասխանում էին նրա հարցերին, հորթը, որ

արդեն երինջ էր դարձել, ականջները սրած լսում էր կարմանալով:

Այստեղ նա որոշ չափով սովորեց թվաբանություն, քերականություն, ինչ-որ չափով նաև՝ անտիկ աշխարհի պատմություն:

Երրորդ տարին ծնեց: Նրա կավակը, ավա՜ղ, սովորական մի անասուն էր, մարդկային խոսքերը հասկանալու ձիրք նա չուներ, ու երբ մեկ տարի անց նրան վաճառեցին, մայրը շուտով վարժվեց նրա բացակայությանը:

Սրանք էլ, նախորդ տերերի պես, այնպես էլ չհասկացան, թե ինչ կով է ինքը, չնայած դա այնքան էլ դըժվար չէր: Չէ՞ որ նրանք կարող էին նկատել, որ երբ ինչ-որ բան էին ասում իր հասցեին և այդ մասին բարձրաձայն խոսում էին իրար հետ, եթե նստած լիներ, վեր էր կենում ու գնում գոմ, եթե նրանք ցանկանում էին նրան գոմ տանել, գնում էր դաշտ, եթե ցանկանում էին, որ նա արածեր: Եթե ասում էին.

# ԿՈՎԸ



ԶՈՐԱՅՐ ԽԱԼԱՓՅԱՆ



— Ջուր տալու ժամանակն է:

Ինքը լսելով բարձրանում էր և բռնում աղբյուրի ճանապարհը:

Նա գիտեր նաև խորամանկել: Երբ նախրապանն ասում էր. «Հո՛-հո՛, սատկա՜ծ, ի՞նչ ես գլուխդ կախ գնում», կովը ցույց էր տալիս, իբր չի հասկանում, գնում էր գլուխը կախ, հեռանում նախրից, որպեսզի արածի հեռվում, մաքուր, ոտնատակ չտված արոտներում: Նա իրավունք ուներ չլսելու, կով էր, մարդու լեզուն ինչո՞ւ պիտի հասկանար: Բայց երբ նախրապանը շպրտում էր մահակը նրա ետևից և մանավանդ երբ մահակը կպչում էր իր ետևի ոտքերի ջղերին, եթե լեզու ունենար, կարողանար պատասխանել, կշրջվեր ու կհայհոյեր նախրապանին՝ հենց նրանից լսած թունդ ու խայտառակ հայհոյանքներով: Սակայն նա միայն կշտամբանքով նայում էր նախրապանին և հառաչելով վերադառնում գարշահոտ նախիր:

Ուսուցիչն ու իր կինը շարունակ վիճում էին, կովը լսում էր ու կարմանում նրանց խոսքերի իմաստի վրա: Նա կարմանում էր, թե որքան դժվար է երկու մարդու համար իրար հետ ապրելը, ու երբ նրանք բաժանվեցին, կովը ևս համոզվեց, որ այլ կերպ հնարավոր չէր:

Հաջորդ տերը փոստատար էր, կովը դրա անունը արդեն գիտեր, նրա որոշ սովորություններին սովոր էր, այժմ շատ մոտիկից սկսեց ուսումնասիրել նրան:

Փոստատարի տանը մնաց երեք տարի և այստեղ ունեցավ երկու հորթ:

Քանի մեծանում, բնականաբար այնքան լռչախոհ ու ծանրաբարո կով էր դառնում: Փոստատարի սեփականությունը դառնալու երկրորդ տարին նա իմացավ սարսափելի մի նորություն. բացի վաճառելուց՝ նրան կարող էին նաև մորթել կյանքից: Դեռ ուսուցչի տանը նա անորոշ մի տագնապ ուներ: Գիտեր, որ բաժանվելով՝ սեփականությունը կիսում են կողմերի միջև: Սկզբից նրան կատակային էր թվում, որ կարող են իրեն ևս կիսել ու բաժանել միմյանց միջև, փոստատարի տանը հասկացավ, որ կացությունն ավելի բարդ է:

Երբ խոսում էին որևէ կենդանու մորթելու մասին, կովը սարսափահար իրեն այս ու այն կողմ էր նետում, «խնդրում եմ»... ցանկանում էր ասել նա, բայց միայն բառաչ էր լսվում:

Աշնանը մի օր երկու հոգի եկան և իրենից մի քանի քայլի վրա կանգնած խոսում էին ու կարհուրելի բաներ էին ասում. «Կիլոգրամը մի...» «մորթին այսքան ռուբլի...» և «հարսանիքի համար...»

Տերը չհամաձայնեց, և նրանք գնացին:

Այս նորությունը նրան հանեց բնական հունից, ու նա այլևս չէր կարողանում ո՛չ ուտել, ո՛չ խմել և ո՛չ էլ որոճալ: Ինչի՞ համար: Բանից պարզվում է՝ ինքն իր համար չի արածում, իր համար չի որոճում: Այդ ամենը ռուբլիներով արտահայտվող հաշիվներ էին և վաղ թե ուշ իրեն ևս սպասում է նույն վախճանը, ինչպիսին ունեցել են բոլոր կովերը:

Երկրորդ տարին անծին մնալու համար փոստատարը նրան վաճառեց մեկ ուրիշին: Սրանից խոզի, ոչխարի և այլ անասունների անտանելի հոտ էր փչում: Մթերման կետի ծառայող էր: Այդ նոր բառը՝ «մթերում» ամեն անգամ նրան սրտախառնուք էր պատճառում: Հասկանում էր, թե ինչու են այստեղ հատուկ խնամք տանում, բավականին հյութեղ կեր տալիս, երկար ճանապարհորդության չէին հանում, այլ ախոռներում էին կերակրում՝ խառցված կերով և արհեստական ինչ-որ նյութի համ տվող ջրիկ լափով:

Բռնելուց հետո՝ նոր տերը նրան հանձնեց մթերման:

Մթերման կետի մարդիկ ևս գլխի չընկան, որ կովը հասկանում է իրենց, նրա տարօրինակ վարքը նրանք բացատրել չկարողացան: Երբ նրան կշռում էին մեծ կշեռքի վրա ու երկու հոգի թուղթ ու մատիտ վերցրած գրանցում էին իր կշիռը, կովը վիզը մեկնեց ու նույնպես նայեց թվատախտակին. կարո՞ղ էին, չէ, գլխի ընկնել, որ կովը նույնպես ցանկանում է իմանալ, թե ինչքան է կըշռում ինքը: Նրանցից մեկը մատիտի սուր ծայրով խոցեց իր մուտքը, հեռացրեց, որովհետև կովն ակամա լործոտեց թվատախտակը:

Այստեղ ոչ միայն խոսում էին ամենասարսափելի բաների մասին, այլև կովն իր աչքով էր տեսնում, թե ինչպես այլ անասունների քշում են դեպի մոտակա միհարկանի տներն ու նրանք այլևս այնտեղից չէին վերադառնում: Երբ քամին փչում էր այդ կողմից՝ տաք արյան հոտից անասուններն անհանգիստ իրար էին սեղմվում, թեև նրանցից ոչ մեկի ուղեղին չէր հասնում, թե ինչ է սպասում իրենց:

Սակայն ես արտակարգ կով եմ, ասում էր նա ինքն իրեն, որովհետև ես հասկացող եմ, իսկ նրանք անհաս-

կացող, ես մտածող եմ, իսկ նրանք անմիտ են, ես գիտեմ, իսկ նրանք ոչինչ չգիտեն, ես պարկեշտ եմ, իսկ նրանք ոչ...

Նա գիտեր, որ գնում է այս աշխարհից:

Գուցե հրաշք կատարվեր, գուցե հանուն գիտության նրան միհարկանի տուն չտանեն, գուցե սկսեն ուսումնասիրել իրեն, գուցե հասկանան, որ ինքը բացառիկ, անկրկնելի մի անասուն է: Չէր հավատում, որ այս աշխարհի սարսափները նաև իր համար են, չէր հավատում, որ ինքը եզակի, միակ, անկրկնելի մի կով՝ պետք է մորթվի բոլորի պես:

Քանի անգամ էր նա ապարդյուն փորձեր արել մարդկանց հետ շփվելու, քանի անգամ էր խոսելու պահին մոտեցել մարդկանց, իր արարքով աշխատելով ցույց տալ, որ ինքը հասկանում է նրանց միտքը, որ ինքը մի արտակարգ կով է, արժանի է այլ ուշադրության...

Ահա, երբ ինքը գնաց ու մարմնով փակեց դուռը, դա նշանակում էր, որ ինքը լսեց նրանց խոսքը. «Դուռը բաց է մնացել, ո՞վ է բաց թողել, անասունները հիմա դուրս կգան, կկորչեն»: Դուռը փակելուց հետո առաջինը նրա մեջքին էր իջնում խարազանը, փոխանակ կռահելու, որ ինքը բարի ծառայություն մատուցեց:

Կովը երկար մտածելով՝ հաշտվել էր իր ճակատագրին, միայն մի մտահոգություն ուներ, որ իր նման կովն առանց հասկացվելու պիտի հեռանա այս կյանքից:

Եկավ նաև այդ օրը, և նրան ուրիշ այլ անասունների հետ քշեցին դեպի ձորաբերանի միհարկանի շենքը: Իրենց տանող մարդիկ այլ բաների մասին էին խոսում, նրանցից մեկը իր հարսի ու կնոջ վեճի գանգատն էր անում, իսկ մյուսը լսում էր: Ապա խոսակցությունը փոխվեց և սա մյուսին ցույց տվեց երեկ գնած ժամացույցը: Նրանք մի պահ կանգ առան և տնտղում էին ժամացույցը, կովը նույնպես կանգ առավ ու գլուխը թեքեց ետ, չկարողացավ հետաքրքրությունը հաղթահարել, ցանկացավ նայել, թե դա ինչ ժամացույց է, որ տերն այդքան գովում է: Սակայն պգուշացավ, կարող էին խարազանել նրան:

Հետաքրքրասիրության համար նա շատ հարվածներ էր ստացել և այլևս հույս չուներ, թե կովն ու մարդիկ երբևէ կհասկանան իրար:

Սրանք անասուններին հանձնեցին այլ մարդկանց, փաստաթղթեր ստորագրեցին ու փոխանակեցին, ինչ-որ հաշիվներ ունեցան, որ արտահայտվում է դրամի ձևով:

Սրտախառնոց առաջացնող արգելափակոցից կովը դիտում էր մարդկանց, և պզում էր, որ նրանց հրաժեշտ է տալիս... Նա ոխ չուներ մարդկանց հանդեպ, քանզի նրանք չգիտեն ինչ են անում: Այնուամենայնիվ չէր կարողանում ակամա հառաչանքը զսպել. ինչպիսի՜ կով է կորցնում աշխարհը:

Հաջորդ առավոտյան նրանց մեկ-մեկ կամ զույգերով ներս էին տանում: Եկան, իրեն էլ տարան: Իրեն տարան մի նիհար մոզու հետ, մոզին ուրախ առաջ ընկավ, կարծելով արգելափակոցային գոյության վերջն է, հիմա ազատություն կստանա:

Ներսում, կիսամութի մեջ էլեկտրական լամպեր էին վառվում, չնայած ցերեկ էր: Երկայն, լպրծուն հատակով միջանցքի վերջում, լույսերն ավելի պայծառ էին: Այնտեղից աջ... Կովը չնայեց, բայց ծնկները ծալվեցին:

Մսագործը սկզբում տարավ մոզուն: Ինչ-որ բան կռահելով՝ մոզին դիմադրում էր, բայց մսագործը նրան փաղաքշելով հանգստացրեց և ներս տարավ: Նրանք թեքվեցին քիչ աջ ու չքացան աչքից:

Ահա և մսագործը, վերադարձավ մենակ... կզակից մինչև ոտքերի ծայրը հասնող մոմլաթե գոգնոցով էր նա, և այդ գոգնոցը կարմիր էր ներկված:

Մոտեցավ, կովը ընկրկեց:

— Վախենում է,— ասաց մսագործը հառաչելով:

Այդ կարմիր գոգնոցը, նրա ձեռքի գործիքը... մի՞թե սրանք վերջին բաներն են, որ տեսնում է կովը:

Մսագործը մի բարեգութ մարդ էր:

— Վախենո՞ւմ ես, ջա՜նս,— ասաց նա:

Կովը գլխով արեց:



Նկ. ՀԱԿՈԲ ՀԱԿՈԲՅԱՆԻ

— Շա՞տ ես վախենում:

Կովը երկու անգամ գլխով արեց:

— Է՜հ, ի՞նչ արած, դու ուրիշ ելք չունես:

— Գիտեմ,— հանկարծ ասաց կովը և ինքն էլ զարմացավ, որ բացվեց լեզուն:

Մսագործը հառաչեց.

— Այնուամենայնիվ,— ասաց կովը,— կուզենայի, որ նախքան... այն մասին, որ ես խոսում եմ, հայտնեիր որևէ մեկին: Թող իմանան, որ ես խոսել գիտեմ:

— Դրանից մի՞թե կթանկանա քո միսը,— կատակեց մսագործը:

Կովը ցանկանում էր ապրել, պարզապես ապրել, որպես հասարակ մի կով, սովորական մի անասուն, սովորական մի խոտ ճարակող չորքոտանի: Ապրել և ոչ մեկին պետք չլինել, ապրել միայն ինքն իր համար: Բայց երևում է՝ այդպես չի լինում, այս հողի վրա ամեն մեկն անպայման պատկանում է մեկ ուրիշին: Եթե խոտ ես, ապա նրա համար ես, որ քեզ ուտեն, եթե կով ես և խոտը արածել ես, ապա նրա համար, որ... Բոլորը տեր ունեն և վաղ թե ուշ կգա նաև քո տերը և դանակը ձեռքին կկանգնի քո գլխին...

Մսագործը ծխախոտը դեն նետելով, գործիքը ձեռքին, երբ մոտեցավ, կովը նրան ասաց.

— Մի՞թե չես զարմանում, որ ես խոսում եմ:

Կովը զգաց նաև, որ իր ձայնը դարձել է այնքան խռպոտ, որ խոսքերը հազիվ հասկանալի էին:

Մսագործը հոգոց հանեց և ասաց.

— Ո՜չ, ջա՜նս, բոլորն են քեզ պես այստեղ լեզու առնում, ես դրան սովոր եմ...

Կովը դառը ժպտաց և աչքերը փակեց:

ՓՈՔՐԵՐԻ ՀԱՄԱՐ

## Մի անգամ, զբոսանքի ժամանակ

ԵՖԻՄ ՑՈՒԴԻՆ

Ուզո՞ւմ եք մի բան պատմեմ:

Մի անգամ Աննա մորաքույրը երեխաներին տարավ անտառ: Հասան անտառի բացատը, սկըսեցին խաղալ: Վազում էին թիթեռների ետևից, բայց չէին բռնում, վազում էին այնպես՝ խաղալու համար (երեխաները թիթեռներից շատ են, եթե ամեն երեխա մի թիթեռ բռնի, թիթեռներն աշխարհի երեսից կվերանան): Հետո սկսեցին ծաղկից ծաղիկ անցնել ու հոտոտել (բայց չէին պոկում, եթե ամեն երեխա մի ծաղկեփունջ անի, մյուս անգամ այս բացատում թիթեռներն ու երեխաները գործ չեն ունենա):

Վիտյան երեխաներից ետ մնաց, որոշեց ծառը բարձրանալ: Բարձրանալը բարձրացավ, հասավ ամենաբարձր կատարին, բայց իջնել չկարողացավ՝ վախենում էր: Սկսեց լաց լինել և օգնություն կանչել: Միտյան լսեց, մոտիկ վազեց, ասաց. «Հիմա ես քեզ կօգնեմ»: Բարձրացավ ծառը, բայց իջնել չկարողացավ, նայեց ցած, վախեցավ: Սկսեցին երկուսով լաց լինել և օգնություն կանչել: Լսեց նրանց լացը Օլյան, մոտիկ վազեց, աղջիկ էր, բայց համարձակ էր: Նա էլ բարձրացավ ծառը, բայց իջնել չկարողացավ: Նա էլ սկսեց լաց լինել: Լսեց Կոլյան, մոտիկ վազեց ու ասաց. «Հիմա ես բոլորիդ կիջեցնեմ»: Բարձրացավ ծառը, նայեց ցած, վա՜յ, ի՜նչ բարձր է, ի՜նչ վախենալի է: Նա էլ սկսեց լաց լինել ու օգնություն կանչել: Նրանց ձայնը լսեց Տոլյան, մոտիկ վազեց. «Պի՜նդ կացեք,— ասաց նա,— ամո՜ւր բռնեցեք, ես հիմա բոլորիդ ցած կիջեցնեմ»: Նա էլ բարձրացավ ծառը, ճյուղը ոտքի տակ ճռճվում էր, ուր որ է կոտրվելու էր: Էլ ի՜նչ իջնել: Սկսեցին հինգով լաց լինել: Լսեցին նրանց լացը Լուսյան ու Մարուսյան, սրանք էլ մոտիկ վազեցին. «Լաց մի՛ լինեք,— ասացին,— մենք ձեզ կօգնենք»: Նրանք թեև փոքրիկ էին, բայց շատ չէին բարձրանալու, ամբողջ ծառը արդեն բռնըված էր: Բարձրացան ծառը, բայց ինչպե՞ս իջնեին՝ չգիտեին: Սկսեցին խմբով լաց լինել և օգնություն կանչել: Եկավ Աննա մորաքույրը, գլուխը տարուբերեց, բայց նրանց փրկել էր պետք... Ի՞նչ անի, ինչպե՞ս փրկի, Աննա մորաքույրը ուզում էր ծառը բարձրանալ, բայց չէր կարողանում, հասկանո՞ւմ եք, չէր կա-րո-ղա-նում...

# • 1978 • ՄԵՐ ՄՐՑԱՆԱԿԻՐՆԵՐԸ • 1978 •



«Պիոներ» ամսագրի 1978 թ. լավագույն գրական ստեղծագործության մրցանակը շնորհվեց արձակագիր ԼԵՈՆԻԴ ՀՈՒՐՈՒՆՑԻՆ «Կանաչ ծառուղի» պատմվածքի համար:



Նկարիչ ՍԱՐՈ ԿԱԼԵՆՑԸ «Պարահանդես» բանաստեղծության, «Ամենամեծ գնդակը», «Սահադաշտ» պատմվածքների, «Հովհաննես Ադամյան» և այլ նյութերի ձևավորման, ինչպես նաև ամսագրի 8-րդ և 10-րդ համարների շապիկի առաջին էջերի նկարազարդման համար արժանացավ 1978 թ. լավագույն նկարչական աշխատանքի մրցանակին:

# ԻՄԱՑՈՒԹՅԱՆ ՈՒՂԻՆ

ՀԱՅԿ ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ



Մեր դարի սկզբին և դրանից հետո էլ, տասնամյակներ շարունակ, մասնագետների և ոչ մասնագետների շրջանում հաճախ էին սուր վեճեր բորբոքվում Մարսի բնակելիության հարցի շուրջը: Մեր շիկակարմիր հարևանը նման ուշադրության էր արժանացել իր առեղծվածային «ջրանցքների» պատճառով: Այդպես էին անվանել նրա մակերևույթի վրա որոշ աստղագետների կողմից դիտված մուգ գույնի բազմաթիվ ուղիղ գծերը, որոնք ոռոգման համակարգ էին հիշեցնում: Իսկ եթե կային ջրանցքներ, ապա պետք է գոյություն ունենային նաև դրանք կառուցող մարսեցիները...

Մարսյան «ջրանցքների» և այլ մոլորակներում կյանքի գոյության հնարավորությունների մասին տասնամյակներ առաջ հրապարակային մի դասախոսությունից էլ սկսվում է մեր պատմությունը: Այն տեղի է ունեցել Թբիլիսիի դպրոցներից մեկում: Զեկուցողը աստղերով ու աստղագիտությամբ հրապուրված մի տասներկուամյա հայ պատանի էր: Այդ պատանին այն ժամանակ նույնիսկ չէր կարող երևակայել, որ դրանից ուղիղ հիսուն տարի անց, իր իսկ ստեղծած Բյուրականի աստղադիտարանում կկազմակերպվի նույն այդ հարցերին նվիրված միջազգային գիտաժողով, որին կմասնակցեն աշխարհի տարբեր երկրներից ժամանած բազմաթիվ հանրաճանաչ գիտնականներ:

Այդ դեռ հետո էր լինելու՝ տասնամյակներ անց: Իսկ 1921 թվականին պատանին պարզապես սիրով ու կրքով պաշտպանում էր այլ մոլորակներում կյանքի գոյության վարկածը, որի մասին կարդացել էր բազմաթիվ գրքերում ու գիտական հանդեսներում...

— Փոքր հասակից բնական գիտությունների ու տրամաբանական մտածողության նկատմամբ իմ մեջ սեր է սերմանել հայրս՝ Համազասպ Համբարձումյանը,— պատմում է ակադեմիկոս Վիկտոր Համբարձումյանն իր առաջին հրապարակային զեկուցումից տասնամյակներ անց:— Հայրս մասնագիտությամբ բանասեր էր, սակայն մեծ հարգանք էր տածում բնական գիտությունների հանդեպ: Նրա շնորհիվ ես վաղ հասակից սկսեցի ծանոթանալ ֆիզիկային և հատկապես մաթեմատիկային ու մաթեմատիկական մտածողությանը:

Մանկական հրապուրանքներն անհետևանք չանցան, այլ տարեցտարի ամրացան: Դրա համար, անկասկած, բավականին մեծ դեր կատարեց նաև ժամանակը՝ քսաներորդ դարի սկիզբը, որը պատմության մեջ կմնա իբրև ֆիզիկայի ամենախոշորագույն հայտնագործությունների ժամանակաշրջան: Մի քանի տարի անց նա արդեն Լենինգրադի համալսարանի մաթեմատիկական ֆակուլտետի ուսանող էր, համալսարան, որի հետ կապվելու էր նրա հետագա դասախոսական ու գիտական գործունեության մի զգալի մասը: Հենց այստեղ էլ 1926 թվականին, տասնութ տարեկան հասակում նա հրապարակում է իր առաջին գիտական աշխատանքը: Իսկ հա-

ջորդ և հետագա տարիներին սկսելու էին հրապարակ գալ աստղաֆիզիկային ու մաթեմատիկական ֆիզիկային նվիրված նրա բազմաթիվ աշխատությունները, որոնք այսօր արդեն դասական են համարվում...

— Համալսարանն ավարտեցի 1928 թվականին,— շարունակում է ակադեմիկոսը, ապա ժպտում:— Իսկ բարձրագույն կրթության մասին դիպլոմ ստացել եմ միայն վերջերս, յոթանասունութ թվի ամռանը: Ավարտելուց անմիջապես հետո հրաժարվեցի ստանալ այն, որովհետև ոչ թե դիպլոմի, այլ գիտելիքների համար էի սովորել: Չէ՞ որ ուսանելու հիմնական նպատակը գիտելիքներ ձեռք բերելն է և ոչ թե դրանց գոյությունը հաստատող փաստաթուղթը... Ես հիմա էլ եմ նույն կարծիքին, բայց հիսուն տարի անց, երբ արդեն հասցրել եմ ապացուցել, որ հնարավոր է ապրել նաև առանց դիպլոմի, այն արդեն կարելի է ստանալ,— ասում է նա, շարունակելով ժպտալ:

Համալսարանը, իսկ այնուհետև նաև Պուլկովոյի աստղադիտարանի ասպիրանտուրան ավարտելուց հետո, Վիկտոր Համբարձումյանը շարունակում է աշխատել աստղաֆիզիկական տարբեր խնդիրների տեսական հետազոտության վրա, միաժամանակ համալսարանի ուսանողներին դասախոսելով իր կողմից մեր երկրում առաջին անգամ ստեղծված տեսական աստղաֆիզիկայի դասընթացը:

Նրա գիտական ու դասախոսական ակտիվ գործունեության գնահատականը դարձավ այն, որ 1936 թվականին Լենինգրադի համալսարանի քսանութամյա պրոֆեսորը մեր երկրի մի շարք գիտնականների հետ միասին առաջիններից մեկն ստացավ ֆիզիկամաթեմատիկական գիտությունների դոկտորի կոչում: Հետո, տարիներ անց, աշխարհի բազմաթիվ նշանավոր համալսարաններ նրան պատվավոր դոկտոր էին ընտրելու, տարբեր երկրների ակադեմիաներ նրա անունը մշտապես գրանցելու էին իրենց օտարերկրյա անդամների շարքում: Իսկ հետո, ավելի ուշ նա դառնալու էր միջազգային աստղագիտական միության, ապա նաև՝ միջազգային գիտական միությունների խորհրդի պրեզիդենտ: Սա ճանաչման ու գնահատման այն գագաթնակետն է, որին մեր երկրի գիտնականներից առաջինը նա հասավ:

Սակայն այդ ամենը լինելու էր հետո: Իսկ մինչ այդ ակադեմիկոս Համբարձումյանն արդեն տեղափոխվել էր Հայաստան ու Արագածի փեշերին հիմնադրել Բյուրականի աստղադիտարանը: Այստեղ արդեն նրա աշխատանքներում մաթեմատիկական կողմնորոշում ունեցող խնդիրներին փոխարինեցին դիտումների հետ սերտորեն կապված ֆիզիկական տեսությունները: Դրանք գլխավորապես վերաբերում են Տիեզերքում երկնային մարմինների՝ աստղերի, գալակտիկաների, տիեզերական այլ բնակիչների առաջացման ու նրանց կյանքի հարցերին: Իսկ դրանք հենց այն հարցերն են, որոնք ամենահնագույն ժամանակներից ի վեր շարունակ զբաղեցնում են մարդկանց մտքերը:

Իհարկե, երկնային մարմինների առաջացման ու նրանց կյանքի մասին գոյություն ունեն բազմաթիվ տեսակետներ: Իսկ դրանց հիման վրա էլ ստեղծվել են ու կան մաթեմատիկայի ու ֆիզիկայի օրենքներին ենթարկվող տեսություններ, որոնցից յուրաքանչյուրն իր ձևով է բացատրում Տիեզերքում դիտվող երևույթները:

Սակայն Վիկտոր Համբարձումյանի կողմից առաջ քաշված տեսությունը, որ գիտության մեջ մտավ իբրև «Բյուրականյան ուղղություն», բոլորովին նոր խոսք էր գիտության մեջ: Այն դեմ էր գնում իշխող բոլոր պատկերացումներին: Եվ ընդհանրապես, գիտության մեջ միշտ նոր, դեռևս չտրորված ուղիով ընթանալը հատուկ է ակադեմիկոս Համբարձումյանի ողջ գիտական գործունեությանը, որի ընթացքում նա բազմաթիվ անգամ է հանդիպել ինչպես շարքային, այնպես էլ հանրահայտ շատ աստղագետների թերահավատությանը: Եվ, այնուամենայնիվ, ժամանակը միշտ ապացուցել է նրա իրավացիությունը: Այդ մասին է վկայում նաև այն խոստովանությունը, որ արել է հոլանդացի հայտնի աստղագետ Յան Օորտը. «Ես դադարել եմ զարմանալ, թե ինչպես են մեկը մյուսի ետևից հաստատվում Համբարձումյանի բոլոր վարկածները, որ նա մարգարեաբար արել է շատ տարիներ առաջ»:

Սակայն ո՞րն է ակադեմիկոս Վիկտոր Համբարձումյանի հաջողության գաղտնիքը, ի՞նչն է պատճառը, որ իրար ետևից իրականանում են նրա բոլոր կանխատեսումները, կապված այս կամ այն աստղաֆիզիկական երևույթի մեկնաբանման հետ: Այդ հարցին շատ ավելի լավ պատասխանում են նրա հետևյալ խոսքերը.

— Գիտության մեջ քիչ թե շատ հաջողության հասնելու համար ընդունակությունները չափազանց կարևոր են, բայց բավական չեն: Անհրաժեշտ է նաև մեծ աշխատասիրություն, պարտաճանաչություն և նվիրվածություն ընտրած գործին: Միայն այս հատկանիշների ճիշտ համատեղմամբ կարելի է որևէ հաջողություն ակնկալել գիտության մեջ...

Այսօր էլ չափազանց մեծ ծանրաբեռնվածությամբ ու նվիրվածությամբ է աշխատում աշխարհահռչակ գիտնականը: Եվ դա վերաբերվում է ոչ միայն գիտությանը: Տասնամյակներ ի վեր նա ՀՍՍՀ գիտությունների ակադեմիայի պրեզիդենտն է, Բյուրականի աստղադիտարանի հիմնադիրն ու անփոփոխ տնօրենը, Երևանում հրատարակվող և համար առ համար Նյու-Յորքում անգլերեն թարգմանվող «Աստղաֆիզիկա» համամիութենական հանդեսի, Հայկական Սովետական Հանրագիտարանի գլխավոր խմբագիրը, Հայաստանի «Գիտելիք» ընկերության նախագահը... Գրեթե անհնար է թվել ամեն ինչ: Իսկ այդ պարտականություններից յուրաքանչյուրի կատարումը նույնքան ընդունակություններ ու անդուլ աշխատանք է պահանջում, որքան և գիտությունը, որին նա ծառայում է անմնացորդ նվիրումով:

# «ԱՍՏՂԵՐԻ ՀԵՏ ԽՈՍՈՂ ՄԱՐԴԻԿ»

*Հոկտեմբերյան քաղաքի № 6 միջնակարգ դպրոցի պիոներական դրուժինան կրում է աշխարհահռչակ գիտնական Վիկտոր Համբարձումյանի անունը: Այդ անվանը դրուժինան արժանացավ 1970 թվականին: Բոլոր երթուղիների ուղղությամբ անկյուններ ստեղծեցին, ֆիլմադարան ու ձայնադարան ունեցան, և ընդարձակ պիոներսենյակը հիմա փոքր է թվում տարեցտարի ավելացող նյութերի առատությունից: Առանձնանում է, հատկապես «Աստղերի հետ խոսող մարդիկ» անկյունը: Այն ասես մի բաց գիրք լինի տիեզերագնացների, աստղագիտության ու տիեզերագիտության վերաբերյալ և որպես առաջին մեծության աստղ կենտրոնում աչքի է ընկնում Վ. Համբարձումյանի մեծադիր լուսանկարը:*

*Օրվա ցանկացած ժամին այստեղ կարելի է գիշերային երկնքի պատրանք ստեղծել: Դրա համար բավական է անջատել նեոնային լույսերը և միացնել «աստղայինը»: Պատին ամրացված տելեսկոպատիպ հարմարանքից կապույտ լույսի խուրձ է դուրս հորդում, մեր աչքի առաջ բացվում է տիեզերքի մի գողտրիկ անկյուն, որտեղ առկայծում է մեր Երկիր մոլորակը, տարբեր մեծության աստղեր, տիեզերանավեր:*

*Աստղերին ու տիեզերագնացությանը նվիրված անկյունը ստեղծվել ու տարեցտարի թարմացվում է աշակերտների ձեռքով, և աստղագիտության որոշ դասեր այստեղ են անցկացվում:*



Այս և բազմաթիվ այլ ուշագրավ գործերի համար էր, որ երեք տարի անընդմեջ դրուժինան արժանանում էր աջքևալինի կոչման, իսկ նրա անհանգիստ ու պիոներական գործին անմնացորդ նվիրված ավագ ջոկատավար Իշխան Պետրոսյանը ընտրվեց ավագ ջոկատավարների համամիութենական առաջին հավաքի պատգամավոր:

Դրուժինան դեռ շատ անելիքներ և խնդիր ունի, դրանցից մեկն էլ առաջիկա հանդիպումն է մեծ գիտնականի հետ:

ՎԱՀԱՆ ՄԽԻԱՐՅԱՆ

# ԱՆՀԱՇՏՈՒԹՅՈՒՆ ԴԱՍ

## ԱՆՀԱՎԱՍԱՐ ՄԱՐՏ

Տեսնելով առաջին ձյան նախշուն փաթիլները, մենք՝ աղջիկներով շատ ուրախացանք: Իսկ մեր դասարանի տղաներին չհրապուրեց սպիտակ թագավորությունը: Նրանք բազմանշանակ հայացքներ փոխանակեցին և քրչփրչացին իրար մեջ: Ես որսացի նրանց քչփչոցը. «Դասերից հետո աղջիկներին՝ մահ»: Դժվար չէր հասկանալ տղաների մտադրությունը, և ես ընկերուհիներիս պգուշացրի, բայց ի՞նչ օգուտ: Դպրոցից դուրս գալուն պես սկսվեց ձնագնդիկների տարափը:

Ձնագնդիկները թե՛ անտանելի ցավ էին պատճառում, թե՛ սառեցնում մեզ: Մեր թախանձանքների նկատմամբ նրանք անտարբեր մնացին: Դժվար էր ասել, թե ինչով կավարտվեր այդ «անհավասար մարտը», եթե ուսուցիչներից մեկը վրա չհասներ: Մենք տուն գնացինք հոգնած և ընկճված. մի՞թե այդպես են վարվում համադասարանցի աղջիկների հետ:

ԱԴՐԻՆԵ

## ԴԱՍՂԵԿԸ ՄԻՋԱՄՏԵՑ ԵՎ ՎԵՐՋԱՊԵՍ...

Հրայրը անպգուշությամբ բարձիկով կպել էր Նունեի շրջազգեստին՝ փոշոտել: Ի պատասխան դրա, Նունեն բարձիկով խփեց նրան... և գժտությունն սկսվեց: Դասարանի մյուս տղաները ընկերներին հաշտեցնելու փոխարեն, հանգեցին «միակ և ամենաճիշտ» եզրակացության: Քանի որ կպել են Հրայրի խաթրին, ուրեմն դրանով վիրավորել են բոլոր տղաների ինքնասիրությունը: Եվ այդ աննշան դեպքի պատճառով նրանք կապերը խզեցին բոլոր աղջիկների հետ: Աղջիկներն էլ նրանցից ետ չմնացին և... դասարանը բաժանվեց երկու հակադիր բևեռների: Աստիճանաբար խորանում էր լարվածությունը: Նրանց փոխհարաբերություններում արդեն անխուսափելի էր դասեր խանգարելը, անվիջողությունը: Եթե տղաները մի բան էին նախաձեռնում, աղջիկներն էին աշխատում խափանել, աղջիկներն էին նախաձեռնում՝ տղաներն էին խափանել: Վատն այն էր, որ տղաները չէին էլ մտածում հաշտության մասին, իսկ աղջիկները գտնում էին, որ առաջին քայլը նրանք պետք է անեն: Միջամտեց դասղեկը և վերջապես հաշտությունը կայացավ:

ԱՆԱՀԻՏ

## ԵՐԲ ՆԱ ՏԵՂԱՓՈԽՎԵՑ, ԴԱՍԱՐԱՆԸ ԽԱՂԱՂՎԵՑ...

Տղաներից մեկը վիճեց մի աղջկա հետ, իսկ այդ աղջիկը սեփական վիրավորանքը ընդհանրացրեց և ամբողջ դասարանի աղջիկներին դրդեց չխոսել տղաների հետ: Նա հեշտությամբ հասավ ուզածին: Երբ դասարանն արդեն բանակների էր բաժանված, հենց նա էլ այդ մասին հայտնեց դասղեկին: Հավաքվեցինք, խոսեցինք և կարծես թե ամեն ինչ խաղաղվեց, սակայն այդ նույն աղջիկը միշտ վիճելու առիթներ էր գտնում և դասարանում միայն ձևական համերաշխություն էր տիրում: Բոլորս մի տեսակ լարված ու գրգռված էինք: Իմ կարծիքով, նա չէր կարողանում ապրել առանց վեճ ու կռվի: Միայն նրա տեղափոխվելուց հետո դասարանը խաղաղվեց:

ԿԱՐԵՆ

# ԲԱԼԼԱԴ



Քամին փչչաց ամպի մեջ,
Կանգնեց տղան ճամփի մեջ,
Մի ձնծաղիկ ափի մեջ:
— Խե՛ղճ, խե՛ղճ...

Չորս կողմն հանկարծ խավարեց,
Տղան ճամփան մոլորեց
Ու ժայռի տակ ծվարեց:
— Խե՛ղճ, խե՛ղճ...

Ա՞մպը եկավ ու ոռնաց,
Թե՞ գայլ եկավ ու ոռնաց,
Թե՞ արջ եկավ ու ոռնաց:
— Կա՛ց, կա՛ց...

Նա է, նա է մեղավոր՝
Ծերուկ ամպը բեղավոր.
Հագին՝ քրջեր, մեջքը՝ կոր:
— Ո՞ր, ո՞ր...

Որ թամբել է քամի ձին,
Վախից կառչել է սանձին,
Այդ ու՞ր նրանք սուրացին:
— Ինքն ու ձի՞ն...

Մի ձնծաղիկ ափի մեջ,
Ծիծաղում է ճամփի մեջ
Տղան՝ հայացքն ամպի մեջ:
— Վե՞րջ: Վե՛րջ:

ՄԱՔՍԻՄ ՈՍԿԱՆՅԱՆ

# ...ԱՆՈՒՄ... ԻՆՉՈ՞Ւ

Ահա թե ինչ են պատմում Երևանի № 10 դպրոցի 7—9-րդ դասարանցիները:

## ԾՈՒՅԼԵՐԸ ՇՈՒՏ ԵՆ ՎԻՐԱՎՈՐՎՈՒՄ ԵՎ ՎԻՐԱՎՈՐՈՒՄ

Առաջին դասարանից սկսած՝ սիրով օգնում էինք միմյանց: Մի խոսքով, երանելի դասարան էր: Բայց երբ առարկաները բարդացան, ժամերն ավելացան, արտադասարանական խմբակների պարապմունքները գումարվեցին դրանց, մեր հարաբերությունների մեջ էլ փոփոխություններ նկատվեցին: Դասարանում ծույլեր, անպարտաճանաչներ ու դաս խանգարողներ երևան եկան: Յոթերորդ դասարանը վատ փակեցինք, իսկ ութերորդում արդեն քիչ ենք օգնում իրար: Նկատվող բոլոր խռովությունների պատճառը ծույլերն են: Նրանք եռ են մընում առաջադիմությամբ, այդ պատճառով ավելի դյուրավգաց են, շուտ են վիրավորում և վիրավորվում:

ԳՈՀԱՐ

## ՊԱՐԶՎԵՑ, ՈՐ...

Սեպտեմբերի մեկն էր: Դասարանները դպրոցի բակում առանձին-առանձին կանգնած՝ սպասում էին ներս հրավիրող կանչին: Կողքից դիտողին պիտի որ մեծ բավականություն պատճառեին դպրոցական մաքուր կգեստով, ժպտերես կանգնած շարքերը: Չգիտեմ, մյուս դասարանները ինչպես, բայց մերը քողարկված էր սառնության շղարշի տակ: Մեկնից յուրաքանչյուրը երևի ենթանությամբ էր նայում առաջին դասարանցիներին: Նրանք աղջիկ-տղա ձեռք-ձեռքի տված ուրախ-զվարթ ըսպասում էին առաջին կանչին: Նրանց հարաբերությունները պարզ ու շիտակ էին, անմիջական:

Նայում էինք փոքրիկներին ու ցավում մեր խաթարված ընկերության համար: Մի ամբողջ տարի մենք տղա-աղջիկ խռով էինք իրարից: Բացման արարողությունից հետո, երբ դասարան մտանք, մի տեսակ տխրություն էր իջել մեզ վրա: Ցավալի էր, շատ ցավալի, մտածում էր յուրաքանչյուրս, ախր մեր մանկությունը, ծանոթությունը, դպրոցական կյանքի առաջին օրը սկսվել էր ճիշտ այսպես, ինչպես այս առաջին դասարանցիներինը: Ինչո՞ւ կորցրինք այդ թանկ ընկերությունը, որը շարունակվել էր ութ տարի: Բայց վերջին կես տարում ոտնատակ եղավ տարիների սերն ու մտերմությունը: Եվ տղաներից մեկը հանկարծ բացականչեց. «Գոնե այդ փոքրիկներից կարողանայինք օրինակ վերցնել»:

Պարզվեց, որ բոլորս էլ այդ մասին էինք մտածում:

Ս. Ն.

ԽՄԲԱԳՐՈՒԹՅԱՆ ԿՈՂՄԻՑ.— Մեր ընթերցողներին հրավիրում ենք մասնակցել այս հարցի շուրջը սկսված զրույցին: Գրեցե՛ք ձեր դասարանցիների փոխհարաբերությունների մասին:



ԽՄԲԱԳՐՈՒԹՅԱՆ ԿՈՂՄԻՑ

Լեզուն մարդու մտավոր ու հոգևոր զարգացման հայելին է։ Կիրթ ու հարուստ ներաշխարհ ունեցող մարդը հազիվ թե իր մտքերն ու զգացմունքները արտահայտի ճապաղ, ոչ մի լեզու չհիշեցնող բառակույտով։ Բայց քիչ չեն նաև այն պատանիները, որոնք դիտավորյալ են աղավաղում իրենց լեզուն, տուրք տալով ինչ-որ վատ սովորության, դրանում տեսնելով ինչ-որ կասկածելի արժանիքներ։

Հանուն մայրենի լեզվի մաքրության պետք է պայքարել, և այդ պայքարում շատ բան կարող են անել հենց իրենք՝ դպրոցականները։ Գրեք մեզ ձեր շրջապատում հանդիպող լեզվի աղավաղման դեպքերի մասին, այն մասին, պայքարո՞ւմ եք արդյոք այդ տխուր երևույթի դեմ և ինչպե՞ս եք պայքարում։ Լավագույն թղթակցությունները կտպագրվեն ամսագրում, իսկ նրանց հեղինակները կպարգևատրվեն խմբագրության մրցանակներով։

# «Վատ»՝ հայոց լեզվից

Այս խոսակցությունը ես պատահաբար լսեցի «Հրազդան» մարզադաշտ գնալիս: Զրուցում էին կոկիկ հագնված երկու տղա:

— Ֆուտբոլը սաղից շատ եմ բալետ անում,— ասաց տղաներից մեկը:— Քյորփա վախտ վրատար եմ խաղացել:

— Ես էլ բոքսը: Տրեներս ասում ա, որ ուժեղ ուդար ունեմ:

— Վաաշե բոքսն էլ, բարբեն էլ լավ են: Ախպորս ասի, որ վոլնի բարբա պարապի, չուզեց: Շախմատիստ ա ուզում դառնա: Ի՞նչ կա էդ ֆիգուրների, տուրա-մուրայի, պեշկա-մեշկայի մեջ:

— Ներեցե՛ք, տղանե՛ր,—ընդհատեցի ես:—Այդ ի՞նչ լեզվով եք խոսում:

— Հայերեն,— զարմացած ասացին նրանք:

— Ո՛չ, դուք հայերե՛ն չեք խոսում,— ասացի ես:

— Բա ի՞նչ լեզվով:

— Չգիտեմ:

— Մենք հայերեն ենք խոսում,—քմծիծաղեցին տղաները:

— Իսկ դուք դպրոցում հայերեն սովորո՞ւմ եք:

— Այո: Միշտ «չորս» ու «հինգ» ենք ստանում:

— Չի՛ կարող պատահել:

— Կարող եք ստուգել մեր օրագրերը, եթե չեք հավատում,— ասացին տղաները:

Իհարկե, ստուգելու կարիք չկար: Ամեն ինչ պարզ էր:

Ոչ մի արժեք չունի դասի համար ստացած «հինգ» թվանշանը, երբ դպրոցից դուրս խոսում եք այդ տղաների պես աղավաղված, տգեղ լեզվով: Շատ լեզուներ իմանալը պարծանք է, և ժողովրդական առածն էլ ասում է. «Ինչքան լեզու գիտես, այնքան մարդ ես»: Ցավոք, մայրենի լեզվով վատ խոսողները լեզու չիմացողներն են՝ նրանք, ովքեր մայրենի լեզուն անգամ կանոնավոր չգիտեն: Իսկապես շատ լեզուներ իմացողները երբեք չեն խոսում վերն հիշատակված խառնալեզվով: Հայոց լեզուն աշխարհի հարուստ և ճկուն լեզուներից է, և կարող ենք բնագրին չզիջող թարգմանություններ կատարել բոլոր լեզուներից: Լեզուն պետք է մաքուր, գեղեցիկ լինի ոչ միայն տպագիր խոսքում՝ գրքերում, թերթերում, ամսագրերում կամ դպրոցում, այլև շատ կարևոր է՝ առօրյա խոսակցության ժամանակ: Տգեղ լեզվով հնարավոր չէ գեղեցիկ մտքեր արտահայտել, քանի որ մտքերը ձևավորվում են լեզվի օգնությամբ: Մի՞թե, օրինակ, ավելի հաճելի չէ ասել ու լսել. «Ամենից շատ ֆուտբոլ եմ սիրում: Փոքր ժամանակ դարպասապահ եմ եղել»: Կամ. «Մարզիչս ասում է, որ ուժեղ հարված ունեմ»: Կարծում ենք, որ այդ երկու տղային, ինչպես նաև հայոց լեզուն աղավաղող բոլոր տղաներին ու աղջիկներին հայտնի է, որ բոքս, բարբա, վոլնի, ֆիգուր, վաաշե, տուրա, պեշկա կամ տելեվիզոր, մարոժնի, շոֆեր, ռուլ, պերաշկի, ցիրկ, զոնտիկ, աերոպորտ, յաշիկ բառերը հայերեն կարելի է ասել. բռնցքամարտ, ըմբշամարտ, ազատ, խաղաքար, ընդհանրապես, նավակ, զինվոր, հեռուստացույց, պաղպաղակ, վարորդ, ղեկ, կարկանդակ, կրկես, օդաչու, օդանավակայան, արկղ:

Այո, համոզված ենք, որ այդ բոլորը նրանց հայտնի է: Բայց, հավանաբար, սխալմամբ կարծում են, թե մայրենի լեզվով պետք է մաքուր խոսել բարձր թվանշան ստանալու համար: Ո՛չ: Հայոց լեզուն համազգեստ չէ, որ դպրոցում խնամքով հագնես, իսկ տանը, փողոցում և այլ վայրերում անփույթ նետես ուսերից: Լեզվով է որոշվում խոսողի մտավոր և հոգևոր զարգացման մակարդակը: Ուրեմն այնպես անենք, որ տգեղ և հետամնաց սովորություն չթողնենք:

*ԳՐ. ՄԱԿՈՒՆՑ*



# ՀԵՆՐԻԿ ՍԻՐԱՎՅԱՆ

Հայկ. ՍՍՀ վաստակավոր նկարիչ Հենրիկ Սիրավյանին՝ այդ կենսուրախ, բարի ու հմայիչ մարդուն և նրա ստեղծագործությունները գիտեն ու սիրում են ոչ միայն մեր հանրապետության, այլև նրա սահմաններից դուրս՝ արվեստասերների լայն շրջաններում: Նրան ճանաչում ու սիրում են նաև մեր «Պիոներ» ամսագրի բազմահազար ընթերցողները: Ավելի քան քսան տարի տաղանդավոր նկարիչը աշխատակցում է մեր ամսագրին, հանդես գալով ամսագրում տպագրված հեքիաթների, պատմվածքների ու բանաստեղծությունների բարձրարվեստ ձևավորումներով:

Հենրիկ Սիրավյանը այն առաջին նկարիչներից է, որին շնորհվել է «Պիոներ» ամսագրի տվյալ տարվա լավագույն նկարչական աշխատանքի համար սահմանված մրցանակը: Նրա ստեղծագործությունները ցուցադրվել ու ցուցադրվում են հանրապետական, համամիութենական ու միջազգային ցուցահանդեսներում, դիտողներին գրավելով իրենց արևոտ գույներով ու անմիջականությամբ:



«Աղբյուրի մոտ», 1967 թ.

Սիրավյանը արտասահմանյան մի շարք երկրներում բացված տոնավաճառ-ցուցահանդեսներում մեծ ճաշակով ձևավորել է ՍՍՀՄ տաղավարի այն բաժինը, ուր ներկայացվել են մեր հանրապետության գիտության ու մշակույթի, արդյունաբերության ու գյուղատնտեսության ձեռք բերած նվաճումները:

Իր մեծ զբաղվածությամբ հանդերձ, նա շարունակում է սիրով աշխատակցել մեր ամսագրին, հանդիսանում է նաև նրա կոլեգիայի անդամը, ամսագրի գեղարվեստական ձևավորման գործին ի նպաստ բերելով իր գիտելիքներն ու փորձը:

ԿԱՐԵՆ ՍՄԲԱՏՅԱՆ



# Սովորական մարդ և անսովոր դերասան

Կինոն և Չարլի Չապլինը գրեթե ծնվել են միաժամանակ: Հինգ տարեկան տղա էր նա՝ Լոնդոնի աղքատների թաղամասում ապրող, երբ Լա-Մանշից այն կողմ, Փարիզի նշանավոր «Գրան-կաֆե»-ում Լյումեր եղբայրներն առաջին անգամ գործի դրին իրենց պրոեկցիոն ապարատը: Բնավ պատահական չի լինի, եթեականավոր դերասանի ապագա կենսագիրներն ու նրա արվեստի հետազոտողները հարց տան, թե՝ «Ի՞նչ կլիներ Չապլինի վիճակը, եթե չլիներ կինոն»: Եվ անմիջապես հենց իրենք էլ վրա կբերեն. «Հապա ի՞նչ կլիներ կինոյի վիճակը, եթե Չապլինը չլիներ»:

Չարլզ Սպենսեր Չապլինի (դեռևս ոչ Չարլիի) մանկությունն անցել է աղքատության մեջ: Չարլզի հայրը՝ թափառական մի երգիչ-դերասան, ինչ-որ անվերջանալի շրջագայության էր գնացել իր կրտսեր որդու աշխարհ գալու օրը՝ 1889 թ. ապրիլի 16-ին, հետո էլ դադարեց առհասարակ երևալ: Մայրը մնաց կույգ երեխայով, ավագի՝ Սիդնեի և կրտսերի՝ Չարլզի հետ: Նա երգում էր լոնդոնյան վատագույն մի պանդոկում, հազիվ վաստակելով մի քանի պեննի՝ հացի փող: Հաճախ էր իր հետ տանում և փոքրիկին, հույսով, որ բարի պանդոկապանը կամ կարեկից այցելուներից մեկնումեկը տղային բուֆետում կտա: Մի անգամ նրա մորն հրավիրեցին երգելու զինվորական երեկույթում, բեմ դուրս գալու պահին հանկարծ նրա ձայնը կտրվեց: Գայրացած կարգադրիչը բեմ հրեց հնգամյա Չարլզին և հրամայեց երգել: Տղան հիանալի գիտեր երգի թե՛ բառերը և թե՛ մեղեդին, որ այնքան հաճախ լսել էր մորից: Եվ նա երգեց անվստահ ձայնով: Երգի կեսում, հիացած զինվորները բեմը լցրին պղնձադրամներով: Չարլզը խսկույն երգը ընդհատելով՝ վրա վազեց փողերին, սկսեց հավաքել, բարձրաձայն դառնալով հասարակությանը. «Առաջ՝ փողը... հետո՝ երգը»: Տղայի բառերը դիմավորեցին խլացուցիչ ծիծաղով ու ծափահարություններով..., Այսպես կայացավ ապագա հանճարեղ դերասանի առաջին հանդիպումը հասարակության հետ:

1910 թվի ամռանը երբ մեկնեց Ամերիկա, Չարլզն արդեն հմուտ ծաղրածու, ակրոբատ ու երգիչ էր: Չորս տարի անց, հայտնի կոմիկ դերասան, ռեժիսյոր և պրոդյուսյոր Մակ Սեննետը հրավիրեց նրան մասնակցելու մի տասրոպեանոց ֆիլմի: Նկարահանումներից առաջ նա ասաց Չարլզին, թե՝ կարող ես գրիմ անել ինչպես խելքդ փչի: «Խոստովանում եմ, ես չգիտեի, թե այդ ինչպես է արվում, բայց ներքուստ զգում էի, որ իմ հագուստ-կապուստը պետք է ծիծաղ հարուցի...»— հետագայում հիշում է դերասանն ինքը: Նա հագնում է լայնմփոշ շալվար, նեղլիկ բաճկոն, ոտքերին՝ ահռելի երկար կոշիկներ, դնում է գլխին սև կոտելոկ և ձեռքն առնում ձեռնափայտ: Այսպես ստեղծվում է մեծ արտիստի գրաֆիկական ինքնատիպ խորհրդանիշը: Չարլի Չապլինը ծնվել էր վտիտ, թուլակազմ, ձախորդ, անխոնջ երազող էր և իր արվեստի մեջ ռեալիստ, ծիծաղելի և փոքր-ինչ թախծոտ: «Որքա՜ն ուշ հայտնաբերեցի ես նրան»,—ցավով բացականչում է Մակ Սեննետը: Իսկ Չարլին այդ ժամանակ ընդամենը քսանհինգ տարեկան էր: Մի տարվա մեջ նա նկարահանվեց 35 ֆիլմում: Չլված հաջողություն: Քաղցն ու աղքատությունը ընդմիշտ մնացին ետևում: Բայց Չապլինը երբեք չմոռացավ իր մանկության դառն օրերը: Այդ պատճառով էլ նրա հերոսները թափառաշրջիկներ են և գործազուրկներ, պահակներ և ցածր աստիճանավորներ, ակրոբատներ և շրջիկ դերասաններ: Նա ծաղրում է կապիտալիստական աշխարհի հղփացած հարուստներին: Նրա առաջին իսկ ֆիլմում սատիրական երանգներ են նկատվում ընդդեմ սոցիալական անհավասարության: Չարլին «սրտով, հոգով» զգում էր, որ իր ունակություններն ավելին են, քան պահանջվում է հասարակ կոմիկից: Նա սկսում է գրել սցենարներ, երաժշտություն՝ կինոֆիլմերի համար: 1916—17 թվերին ստեղծված «Վաշխառու», «Չարլին՝ էմիգրանտ», «Չարլին՝ ոստիկան» ֆիլմերը հանդիսանում են նրա առաջին գլուխ-գործոցները: 1917—1927 թվերին նա ստեղծեց անմոռանալի ֆիլմեր, որոնք համաշխարհային մշակույթի գլուխգործոցներից են հանդիսանում:



Համր կինոյի հռչակավոր վարպետը երկար ժամանակ չէր ընդունում հնչյունային կինոն: Միայն 1940 թ. նկարահանելով «Մեծ դիկտատորը», ուր կայրույթով դատապարտում է ֆաշիզմն ու Հիտլերին, Չապլինը ձեռքն է առնում հնչյունային կինոյի զենքը:

Իր առաջադիմական հայացքների համար նա հարկադրված թողնում է Ամերիկան, 1952 թ. հաստատվում Ժնևյան լճից ոչ հեռու՝ շվեյցարական մի գյուղում: Եվ չի նիրհում դափնիների վրա: Գրում է իր հուշերը, վերլուծում է իր ողջ կյանքը: «Անհրաժեշտ չէր գրքեր կարդալ, հասկանալու համար, որ կյանքի թեման՝ պայքարն է»,— այսպես հակիրճ ձևակերպել է իր հավատամքը հռչակավոր դերասանը:

Նա մահացավ 1977 թ. դեկտեմբերի 25-ին, 88 տարեկան հասակում: Բայց նրա ֆիլմերն ու նրա ստեղծած հերոսները նրան պսակել են անթառամ փառքով, անմահություն պարգևելով նրան:

*ԴԻՄԻՏՐ ՖՐԱՆԳՈՎ*



# ԱՆՏԱՌԸ ՍԻՐՈՒՄ Է ՍԻՐՏ ՈՒ ՀՈԳԻ ՈՒՆԵՑՈՂՆԵՐԻՆ

*ՀՐԱՉՅԱ ՄԱԹԵՎՈՍՅԱՆ*

Մի հին օրհնանք կա՝ «Դրախտածառի նման կանաչ ու առողջ լինես»: Մշտադալար է դրախտածառը, ամուր ու այնքան գեղեցիկ, որ չես համարձակվի վնասել նրան: Իսկ թե դիմես կացնի, ապա ձեռքերդ կցավեն: Ու հիմա մեծ տագնապով ասվում է՝ աշխարհում վերանում է երկաթածառը (մի ծառ և մի քանի տեսակ անվանում ունի):

Աշխարհում գոյություն ունեցող միլիարդավոր գրքերի անտառում արդեն հասակ է նետում «Կարմիր գիրքը»՝ որպես տագնապ ու զգուշացում: Անհետանում են կենդանական ու բուսական աշխարհի բազմաթիվ ներկայացուցիչներ: Կարմրածառը, ինչպես թեղին, շատ երկրներում անհետացել է, հետքը չկա: Վտանգը, պեցիրի նման, տարածվում է: Նրա դեմն առնելու համար պետք է պայքարել նվիրումով, պետք է կանգնել վտանգի դեմ ու հավատալ հաղթանակին:

Նոյեմբերյանում Ոսկեպար հրաշալի անվամբ մի գյուղ կա, որտեղից ձգվում են սարերն ու անտառները տանող ճամփաները: Ալեհեր ծերունու նման մի ճամփա մեզ առաջնորդում է վեր, դեպի անտառի խորքերը: Քարափներից թռչող գետը կակազելով, կարծես ուզում է բան ասել, թռչնահամերգի մեջ ինչ-որ կտրտվող բան կա:

Մեզ առաջնորդող մարդը հայացքով չափում է հեռու կատարները: Մի հայացքով տես, թե ի՜նչ սահմաններ ես ընդգրկում: Ներքևում՝ Բագրատաշենը, ծովի մակերևույթից բարձր է 480 մետր, իսկ անտառի վերին սահմանի բարձրությունը 2100 մետր է: Զարմանալի զոնայականություն. տափաստանային, անտառային, մերձարևադարձային:

— Մարդու և անտառի բնավորությունը իրար շատ նման են: Կարմրածառի տագնապները փոխանցվում են հաճարենուն, կաղնուն: Նայելով կանաչ սարին, կարելի է գուշակել, թե անտառի խորքերում ինչ տագնապներ են արթնանում:

Գառնիկ Ավագյանը, ծնված Կողբ գյուղում, այնպես է խոսում, որ թվում է, թե նրա աչքն էլ իր աչքն ունի:

Կապույտ լույս է մաղում անտառի մեջ: Գույների մեղմ հեղեղ է, գույների հուռք ու ծով, գույների շռայլ խաղ:

Բարձրանո՜ւմ, բարձրանում ենք՝ աչքներս այն զմրուխտ կատարներին, ուր արծիվներն ու արևներն են ճախրում: Մոռանում եմ շատ բան ու նաև «Կարմիր գրքի» մասին: Որովհետև շուրջս մաքրություն է ու անաղարտություն:

Ճանապարհը ծունկ է տալիս, փաթաթվում դարավոր ծառարներին, զոլատվում մատղաշ ծառերի մոտ: Հրաշալի կապույտ լույսի միջից վեր են ձգվում երկնասլաց ծառերը: Հրա՜շք, հրա՜շք... Մեկ էլ հանդիպում ես...փշալարերի: Այո՛, ցանկապատի՛ մեջ է առնված կարմրածառերի գեղեցիկ խումբը: Գառնիկ Ավագյանը՝ շիտակ բնավորության այդ մարդը, որ սովոր է նայել ուղիղ մարդկանց աչքերին, այստեղ նայում է...մարդկանց ոտքերին: Գառնիկ Ավագյանը՝ էությամբ, արմատներով ու մտածողությամբ հողին ձուլված մարդ, այստեղ, այս եզակի թանգարանում, այս գանձարանում դառնում է մի պարզ, խորունկ, հոգսով ու երանությամբ լցված աչք, լցված երկյուղով, թե հանկարծ վնաս չտանք, հանկարծ ոտք չդնենք այնտեղ, ուր կյանք է արարվում: Կարմրածառը՝ համակ կանաչ առողջություն, այնքան պնդակազմ, գեղեցիկ,՝ վերանում է այս աշխարհի երեսից: Դրախտածառ: Երկաթածառ: Ի՞նչ է քո ցավի անունը: «Ծառը և մարդը զգացողությամբ իրար շատ են նման»: Գառնիկ Ավագյանը դրախտածառերի տակ, քանի տեղ, իր ձեռքով քառակուսիների մեջ է առել նորածիլ կարմրավորներին: Հետևում է ընկած սերմի աճին: Տագնապ է ապրում և հույս փայփայում իր մեջ: Քառակուսիների անկյուններում խփված փայտերի վրա գրված են «բնակիչների» ծննդյան, ծլման թվերը և այն, թե «ընտանիքում» քանի անդամ են եղել ու քանիսն են մնացել, և այսպես, ամեն տարի: Սրանք խնամքոտ ձեռքի տակ են: Նայում է նաև նրանց, որոնք «խնամքոտ ձեռքերից դուրս են», հեռու՛ են բնակավայրերից, կարոտ են ջրի: Դրանք խոնավության մեջ են լավ աճում, արևի տակ, ինչ բարձրության վրա էլ լինեն: Ծառատեսակները իրենք ավելի լավ գիտեն՝ ինչ բարձրության վրա աճել, ինչ ծառատեսակների հարևանությամբ: Հետաքրքիր է ծառերի մտածողությունը: Նրանք զարմանալի հիշողություն ունեն: Նրանք, իհարկե, թեթև վիրավորանքներից չէ, որ կարող են հավաքել փեշերը ու հեռանալ այս աշխարհից: Ինչպես հողը, այնպես էլ անտառը, ստեղծվում է, կազմավորվում շատ ու շատ դարերի ընթացքում: Եվ շռայլորեն մարդուն տրամադրվող անտառի ուզածն ինչ է՝ հասկացվել մարդու կողմից:

— Ամեն մարդու ես չեմ բերում այստեղ,— հայացքը փոքրիկ տունկերին, ասում է Գառնիկ Ավագյանը:— Երբեմն վախենում եմ ոչ միայն մարդու ձեռքերից ու ոտքերից, այլ նաև աչքից, ծիծաղելի՞ է, գուցե... այո, վախենում եմ՝ աչք կպչի:

Նա գիտնական է, անտառի ոգին ըմբռնած մարդ, անտառի տերն ու ծառան, բայց վախենում է չար աչքից: Երբ որևէ մեկը ՝խախտած է լինում

անտառի անդորրը, վիրավորած է լինում անտառի անձը, մի գեղեցիկ դաժանություն է բռնբկվում նրա դեմքին, պատժել անտառին պատժողին։ Իսկ անտառի հասցեին ասված ամեն մի հանոյախոսություն շոյում է նրա ինքնասիրությունը։ Ու թե շատերի համար անտառը երգ է, գունանկար, բանաստեղծություն, հանգստավայր, ապա Գառնիկ Ավագյանը այստեղ պարզապես զգաստանում է՝ կրկին ու կրկին հիշում, որ իսկական մարդը, քաղաքացին, անտառը պետք է կրի իր մեջ, ինչպես սերը՝ որդու և մոր նկատմամբ։ Անասելի չի համակրում այն մարդկանց, ովքեր անտառը հիշում են այն ժամանակ, երբ բար ու բարիքներով լիքը լցված է լինում անտառի խուրջինգրպանները։ Բացառիկ լսողություն ունի։ Զատում է յուրաքանչյուր թռչունի ձայնը, նույնիսկ կարող է ասել, թե քանի հոգով են երգում։ Կասի, թե քամու նվագի տակ քանի տեսակի ծառ են խշշում։

Ավագյանը աչք-ունքով հասկացնում է, որ դուրս գանք։ Դարավոր դրախտածառերին և նորածիլ դրախտածառերին պետք է հանգիստ տալ։ Թողած կարմրածառերի վեհությունը, ես նայում եմ Ավագյանին։ Նա բժիշկ է, կփրկի։ Կըփրկի և կտանա անտառի երգը՝ որպես օրհնանք։

Նոյեմբերյան այցելելով՝ դու, սիրելի՛ ընթերցող, կհանդիպես հրաշքների։ Տարածուն դեղձուտները, խնձորուտները, խաղողի այգիները զարդ են ու հարստություն՝ ծնված վերջին տասնամյակներում։ Շուտով, երբ պատրաստ կլինի Ջողազի ջրամբարը, այգեստանները նոր թևեր կբացեն ու կփռվեն-կձգվեն դեպի անտառները։

Անտառներն են պահպանում ջրերը։ Անտառների ոչնչանալու հետ կորչում-անհետանում են շատ ու շատ աղբյուրներ։

Քայլելով Նոյեմբերյանի շեն ու շռայլ գյուղերով, քեզ կգրավեն այգիների մեջ թաղված մենատները։ Հիանում ես տարբեր ծառատեսակներով։ Զարմանում ես՝ տեսնելով մշտադալար ծառեր ու թփեր, որոնք զարդարում են դպրոցների, մուտք-մանկապարտեզների, հիմնարկ-ձեռնարկությունների, Հայրենական պատերազմում զոհված մարտիկների հիշատակը հավերժացնող հուշարձան-կոթողների շրջակայքը։ Այդ ամենը կենսաբանական գիտությունների թեկնածու Գառնիկ Սարգսի Ավագյանի նվերն է իր շրջանի մարդկանց։

Ղեկավարելով Նոյեմբերյանի անտառտնտեսությունը, որքան էլ բազմազբաղ, նա չի զլանում լսել երեխաներին, պատմել նրանց այն հեքիաթները, որի ստեղծողը անտառն է։

Օրերից մի օր էլ նա պատմելու է, անպայման պատմելու է վերստին կյանք առած դրախտածառի հեքիաթը։

Նա շատ է ցանկանում, որ բոլորս սիրենք մայր բնությունը, ամեն ծառ ու ծաղկի համար իր պես հոգի տանք։ Անտառը սիրում է սիրտ ու հոգի ունեցող մարդկանց։

Եթե քեզ որևէ հարց է հուզում, անլուծելի թըվացող որևէ խնդիր՝ կապված մայր բնության հետ, ապա գրիր Գառնիկ Ավագյանին, հասցեն պարզ է. Նոյեմբերյան, Կողբ, ընկեր Գառնիկ Ավագյանին։

Վստահ եղիր, որ պատասխան կստանաս թե՛ նամակիդ, թե՛ հարցիդ։

## ԳԻՏԵ՞Ք, ՈՐ...



● Մեխակը աղմուկ չի սիրում։ Եթե նրան դնեք ռադիոընդունիչի մոտ՝ նա կթառամի։

● Հովտաշուշանը չի կարելի դնել ջրամանի մեջ ուրիշ ծաղիկների հետ։ Նրանք արտաթորում են ջրի մեջ թունավոր նյութեր, որոնցից թառամում են մյուս ծաղիկները։

● Արևմտյան Ավստրալիայի անմարդաբնակ վայրերում աճում է մի հսկայական բաոբաբ։ Երբ այնտեղ կառուցվեց առաջին ավանը, այդ ծառի փչակում տեղական իշխանավորները բանտ հիմնեցին։ Անհրաժեշտ էր միայն փչակի մուտքը վանդակապատել։



● Անտառները ծածկում են ցամաքի զգալի մասը՝ 3,8 միլիարդ հեկտար։ Ամբողջ աշխարհի անտառների 20 տոկոսը գտնվում է Սովետական Միությունում։

● Բամբուկը համակողմանի բույս է։ Նրա ջահել շառավիղները լավ համեմունք են ձկնեղենի և մսեղենի ճաշատեսակների համար, բամբուկի սերմերից թխում են բլիթներ, իսկ ցողունների միջի փափուկ մասից պատրաստում են շաքար։ Բամբուկի խողովականձև ցողունը շատ ճկուն է ու պինդ։ Բամբուկից պատրաստում են կահույք, զամբյուղներ, գըլխարկներ և շատ ու շատ բաներ։ Բամբուկից շինում են նաև կամուրջներ և զանազան տնտեսական շենքեր։ Այժմ բամբուկը գործածում են նաև բետոնի մեջ որպես արմատուրա և ստանում են բամբուկաբետոն։

Բամբուկը արագ է աճում և հասնում է 60 մետր բարձրության։ Արևադարձային երկրներում երկու ամսվա ընթացքում բամբուկը հասնում է 30—40 մետր բարձրության։



Նկ. ԿԱՐԵՆ ՄԻՔԱՅԵԼՅԱՆԻ

# ԲՆՈՒԹՅԱՆ ՊԱՇՏՊԱՆՆԵՐԻ ԿԱՆԱՉ ԳՈՒՄԱՐՏԱԿԸ

Վերջին տարիներին մեր երկրում լայն ծավալ են ստացել «Կանաչ պարեկների» դպրոցական կազմակերպությունները, որոնց խնդիրն է պաշտպանել անտառները և կանաչ տնկարկները: Որտեղ կան անտառներ, «Կանաչ պարեկները» մեծ ծավալի անտառատնկումներ են կատարում, պայքարում են անօրինական անտառահատումների և որսագողության, անտառային վնասատուների և հիվանդությունների դեմ, մեծ քանակությամբ անտառային բարիքներ՝ պտուղներ, բանջարեղեն, դեղաբույսեր են մթերում, պատվաստում և ազնվացնում են անտառային վայրի պտղատուները և այլն: «Կանաչ պարեկների» անդամները նաև հետևում են տուրիստների հանգստի «ոճին», անհրաժեշտության դեպքում բացատրական աշխատանք տանում, տուրիստների հանգստից հետո անտառը «տեսքի են բերում», վերացնում «վայրենի հանգստի» հետևանքները (դա, իհարկե, նրանց աշխատանքի ամենատհաճ մասն է, որի ծավալը կախված է հանգստացողների կուլտուրական մակարդակից), հավաքում են ծառերի ու թփերի սերմեր և հանձնում անտառատնտեսություններին ու անտառային տնկարաններին: Հաշվառման են ենթարկում մրջնանոցները, անհրաժեշտության դեպքում վերաբնակեցնում մրջյուններին, կերակրում են անտառային կենդանիներին, թռչուններին: Մի խոսքով, անում են այն ամենը, ինչ անհրաժեշտ է անտառային միջավայրի պահպանման համար: Եվ ամենակարևորը՝ անցնում են աշխատանքային և բարոյական դաստիարակության հրաշալի դպրոց: Այնտեղ որտեղ անտառները բացակայում են, «Կանաչ պարեկայինները» իրենց խնամքի ու պահպանության տակ են վերցնում կանաչ տնկարկները՝ պաշտպանիչ գոտիները, զբոսայգիները, պուրակները, բակային, փողոցային տնկարկները: Կանաչ թևկապներով նրանք շրջում են փողոցներում ու տնկարկներում և կարգի հրավիրում այն անբարեխիղճներին, որոնք վնասում են տնկարկներն ու մարգախոտը:

Դպրոցական առաջին անտառատնտեսությունը կազմակերպվել է Ուդմուրտիայում՝ 1967 թվականին, Շարանսկի դպրոցականների նախաձեռնությամբ:

Մեր հանրապետությունում 1976-77 թվականներին գործում էին դպրոցական 100 անտառատնտեսություններ, ուր ընդգրկված էին ավելի քան 4000 դպրոցականներ: Նրանց կատարած աշխատանքը, իսկապես, մեծ գովեստի է արժանի: Անցած մեկ և կես տարում պատանի անտառագետները տնկել են 54 հազար ծառ և 15 հազար հեկտար թուփ: Խնամել ու պահպանել են 4,5 հազար հեկտար անտառ, որից 1005 հեկտարի վրա բազմակողմանի խնամքի աշխատանքներ են կատարել (պայքար վնասատուների և հիվանդությունների դեմ, սանիտարական հատումներ և այլն): Բացի այդ, անտառի պատանի բարեկամները խնամել են տնկարաններում աճեցվող բույսերը, կատարել տնկումներ, վերատնկումներ, սնուցում, քաղհան, հողի փխրեցում, տնկիների պարարտացում և այլն: Կանաչապատել են Հայրենական մեծ պատերազմում զոհվածների հուշարձանները, ինչպես նաև միջգյուղյա ճանապարհները՝ ավելի քան 150 կմ ընդհանուր երկարությամբ: Այդ տեսակետից առանձնապես աչքի են ընկել Շամշադինի շրջանի Չինչին գյուղի պատանի անտառապահները, որոնք ստանձնել են շրջակա անտառների չեֆությունը և կենսաբանության դասատու Ա. Գյոզալյանի ղեկավարությամբ հսկայական գործ են կատարել: Շամշադինի անտառատնտեսությունը պատանի անտառապահներին պաշտոնական համազգեստ է տվել, անհրաժեշտ մասնագիտական օգնություն է ցույց տալիս, և աշակերտներին աշխատանքի դիմաց ստացված վարձատրությունը օգտագործվում է դպրոցի լաբորատորիաները կահավորելու, անհրաժեշտ գույք ձեռք բերելու և այլ նպատակների համար:

Ցավոք, դպրոցական որոշ անտառատնտեսություններ ձևական բնույթ են կրում, պաշտոնապես գոյություն ունեն, գրանցված են համապատասխան արձանագրություններում, սակայն իրականում անգործության են մատնված: Այսպես օրինակ, բնության պահպանության ընկերության հանրապետական խորհրդի նախագահությունը այս տարվա մայիսին ստուգեց Ստեփանավանի շրջանի դպրոցական անտառապետությունների կատարած աշխատանքը: Ստուգումը ցույց տվեց, որ շրջանային կազմակերպությունները նման անտառապետություններ են ստեղծել շրջանի համարյա բոլոր դպրոցներում և... բավարարվել այդքանով:

Առանձնապես մեծ անելիքներ ունեն պատանի անտառագետները այն շրջաններում, որտեղ կոլտնտեսային-սովխոզային անտառները զգալի տարածություններ են զբաղեցնում: Այդ անտառները պաշտպանության, խնամքի ու հոգատարության մեծ կարիք ունեն: Այստեղ է, որ պետք է երևա դպրոցական անտառապետությունների իսկական դեմքը, քանի որ այդ անտառները չեն սպասարկվում պետական անտառատնտեսությունների կողմից և գտնվում են խիստ անմխիթար վիճակում:

*ԼԵՎՈՆ ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ*

*Կենսաբանության դոկտոր, պրոֆեսոր*

Լույս է տեսնում 1923 թվականից




**4. 1979 թ.**

ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԵՎ Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԱՆՎԱՆ ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅԱՆ ՀԱՆՐԱՊԵՏԱԿԱՆ ԽՈՐՀՐԴԻ ՄԱՆԿԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

## ԱՅՍ ՀԱՄԱՐՈՒՄ





«Пионер» на армянском языке. Ежемесячный детский журнал ЦК ЛКСМ Армении и Республиканского Совета пионерской организации им. В. И. Ленина. Адрес редакции: 375015, Ереван-15, ул. Кармир банаки, №15.

Հասցեն՝ 375015, Երևան—15, Կարմիր բանակի փողոց, № 15: Հեռախոսներ՝ 56—82—72, 58—08—88, 56—14—96:

ՎՖ 02796: Պատվեր 42: Տպաքանակ 51800: Տպ. 3 մամ.:
Հանձնված է արտադրության 15 I 1979 թ.:
Ստորագրված է տպագրության 20 III 1979 թ.:

ՀՍՍՀ Մինիստրների խորհրդի հրատարակչությունների, պոլիգրաֆիայի և գրքի առևտրի գործերի պետական կոմիտեի Հ. Մեղապարտի անվան պոլիգրաֆկոմբինատ, Երևան—9, Տերյան փ. № 91:

ԳԻՆԸ 15 Կ. ԻՆԴԵՔՍ 77806



# ԳԱՐՈՒՆ

*ԲԱՐՄԵՂ ՏԱՅԼՈՅԱՆ*

Պաղ հեղեղներն են ահա իջնում ձոր,
Մշուշ են շնչում սարալանջ ու սար,
Մեղմ զարթոնքի մեջ մի նոր զնգոցով
Ողջույն են ճամփում աղբյուրներն իրար:
Արահետներն են շունչ առնում սառած,
Արեգակն է ջերմ, զարթոնք է. գարուն,
Մանուշակները հանդերում քնած
Երազն են տեսնում լույս աշխարհ գալու...

Նկ. ԿԱՐԵՆ ՍԱՐԳՍՅԱՆԻ

## ՈՒՂՂՈՒՄ

Մեր ամսագրի այս տարվա առաջին համարում տպագրված «Ժամացույց—օրացույցի» վերջին երեք ամիսների վրա համապատասխանաբար նշված են 8, 2, 4 կետեր, որոնք սխալ են: Ճիշտը հետևյալն է. հոկտեմբերին՝ ոչ մի կետ, նոյեմբերին՝ երեք, դեկտեմբերին՝ հինգ:

Խմբագրությունը ներողություն է խնդրում թույլ տրված սխալի համար և շնորհակալություն է հայտնում իր այն բազմաթիվ պատանի և տարեց ընթերցողներին, ովքեր նկատելով հիշյալ սխալը, շտապել են խմբագրությանն այդ մասին գրել: Խմբագրությունը միաժամանակ հույս է հայտնում, որ մեր ընթերցողները այսուհետև նույնպիսի ակտիվությամբ կարձագանքեն նաև ամսագրի յուրաքանչյուր համարում տպագրված բազմազան նյութերին, գրելով մեզ իրենց կարծիքները կարդացածի վերաբերյալ, նաև առաջարկություններն ու ցանկությունները:

«ՊԻՈՆԵՐԻ» ԽՄԲԱԳՐՈՒԹՅՈՒՆ